Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 2—3

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

ՀԿ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի Բլոկնոտ

№ 2—3

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944





ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


1. Հայկական ՍՍՌ 1-ին գումարման Գերագույն Սովետի 8-րդ սեսիան.— Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի ընդունած օրենքները . . . . . . . . . . 3—15

2. Հայկական ՍՍՌ Պաշտպանության միութենական-ռեսպուբլիկական ժողովրդական կոմիսարիատ և Հայկական ՍՍՌ Արտաքին Գործերի միութենական-ռեսպուբլիկական ժողովրդական կոմիսարիատ կազմակերպելու մասին.—Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի նախագահ, դեպուտատ Ա. Ս. Սարգսյանի զեկուցումը . . . . . . . . 16

3. Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետում և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմում.— Հայկական ՍՍՌ 1944 թ. գյուղատնտեսական աշխատանքների պլանի մասին . . . . . 42

4. Մ. Ի. Կալինին.—Մի քանի խոսք պրոպագանդայի և ագիտացիայի մասին . . . 56

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

5. Կարմիր Բանակի մարտիկների մասսայական հերոսությունը . . . . . . . 82

6. Կարմիր Բանակի փառքի օրագրերը . . . 92


# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1-ԻՆ ԳՈՒՄԱՐՄԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ VIII ՍԵՍԻԱՆ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԸՆԴՈՒՆԱԾ ՕՐԵՆՔՆԵՐԸ

## Օ Ր Ե Ն Ք

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ 1944 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵԻ ՄԱՍԻՆ

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետը ՈՐՈՇՈՒՄ է.

1. Հաստատել Հայկական ՍՍՌ Ժողովրդական Կոմիսարների Սովետի ներկայացրած Հայկական ՍՍՌ 1944 թվականի Պետական բյուջեն, Բյուջետային հանձնաժողովի զեկուցման առթիվ ընդունված փոփոխություններով, այն է.

*Ըստ եկամուտների՝ ընդամենը* 541·205 *հազար ռուբլի:*

*Ըստ ծախսերի՝ ընդամենը* 541·205 *հազար ռուբլի:*

2. *Սույն Օրենքի 1-ին հոդվածին համապատասխան հաստատել Հայկական ՍՍՌ ռեսպուբլիկական բյուջեի եկամուտներն ու ծախսերը՝*

Ըստ եկամուտների՝ 467.678 հազ. ռուբ. գումարով և

Ըստ ծախսերի (առանց տեղական բյուջեներին տրվող միջոցների)՝ 282.692 հազ. ռուբ. գումարով.

3. Հաստատել շրջանային և քաղաքային սովետների 1944 թվականի տեղական բյուջեները և պետական հարկերից ու եկամուտներից կատարվող մասհանումների ու դոտացիայի կարգով ռեսպուբլիկական բյուջեից տեղական բյուջեներին տրվող միջոցների ծավալը հետևյալ գումարներով.

(Հազ. ռուբլիներով)

| Շրջանների և քաղաքների անունները | Բյուջեների ծավալը ըստ եկամուտների և ծախսերի | Ռեսպուբլիկական բյուջեից տրվող միջոցներ | |
|---|---|---|---|
| | | Պետական հարկերից և եկամուտներից կատարվող մասհանումներ | Դոտացիա |
| Աղին | 3408 | 1211 | 1961 |
| Ազիզբեկով | 2976 | 1088 | 1685 |
| Ալավերդի | 7940 | 6371 | — |
| Ալագյազ | 2785 | 939 | 1666 |
| Ամասիա | 2850 | 902 | 1684 |



| | | | |
|---|---|---|---|
| Ապարան | 3685 | 1206 | 2235 |
| Արթիկ | 5172 | 2262 | 2550 |
| Ախտա | 4861 | 2222 | 2231 |
| Աշտարակ | 5713 | 5077 | — |
| Բասարգեչար | 5240 | 2809 | 1966 |
| Բերիա | 4488 | 3227 | — |
| Վաղարշապատ | 6254 | 4752 | — |
| Վեդի | 4084 | 3710 | — |
| Գորիս | 5283 | 4274 | — |
| Ղուկասյան | 3108 | 1067 | 1796 |
| Դիլիջան | 3544 | 2560 | — |
| Դուզքենդ | 5316 | 2375 | 2459 |
| Ձանգիբասար | 3510 | 3168 | — |
| Իջևան | 3829 | 3318 | — |
| Կալինինո | 3963 | 3188 | — |
| Ղամարլու | 5984 | 4639 | — |
| Ղարաբաղլար | 3097 | 922 | 1969 |
| Ղափան | 8533 | 7480 | — |
| Կիրովական | 9263 | 5584 | — |
| Կոտայք | 5833 | 3086 | 2330 |
| Կրասնոսելսկ | 4052 | 1645 | 2062 |
| Մարտունի | 4773 | 2300 | 2129 |
| Մեղրի | 2729 | 2361 | — |
| Միկոյան | 5507 | 5147 | — |
| Նոյեմբերյան | 3174 | 2777 | — |
| Նոր Բայազետ | 5401 | 4765 | — |
| Հոկտեմբերյան | 6231 | 4937 | — |

(Հազ. ռուբլիներով)

| Շրջանների և քաղաքների անունները | Բյուջեների ծավալը ըստ եկամուտների և ծախսերի | Ռեսպուբլիկական բյուջեից տրվող միջոցներ | |
|---|---|---|---|
| | | Պետական հարկերից և եկամուտներից կատարվող մասհանումներ | Դոտացիա |
| Սևան | 3316 | 2798 | — |
| Սիսիան | 4939 | 1926 | 2405 |
| Սպիտակ | 3789 | 3370 | — |
| Ստեփանավան | 5402 | 3883 | — |
| Թալին | 4766 | 1936 | 2442 |
| Շամշադին | 3897 | 3396 | — |
| Քաղ. Լենինական | 18670 | 5578 | — |
| Քաղ. Երևան | 61142 | 26985 | — |
| Ընդամենը | 258513 | 151326 | 33660 |

4. Սահմանել Հայկական ՍՍՌ շրջանների և քաղաքների բյուջեների համար 1944 թվականի մասհանումները.

ա) Ոչ ապրանքային գործառնությունների հարկից— 100 %

բ) Մենատնտես ծխատերերի հարկից— 100 %



գ) Մեքենա-տրակտորային կայանների եկամուտներից— 25 %

5. Սահմանել 1944 թվականի համար շրջանառության հարկից, կոլխոզների եկամտահարկից, կոլխոզնիկների և մենատնտեսների գյուղատնտեսական հարկից, ազգաբնակչության եկամտահարկից, ռազմական հարկից և բացված պետական մասսայական փոխառություններից Հայկական ՍՍՌ շրջանների և քաղաքների տեղական բյուջեներին տրվող մասհանումները հետևյալ չափերով.

| Շրջանների և քաղաքների անունները | ՄԱՍՀԱՆՄԱՆ ՏՈԿՈՍՆԵՐԸ | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Շրջանառության հարկից | Կոլխոզների եկամտահարկից | Կոլխոզնիկների և մենատնտեսների գյուղատնտ. հարկից | Բացված պետական մասսայական փոխառություններից | Ազգաբնակչության եկամտահարկից | Ռազմական հարկից |
| Աղին | 100 | 30 | 30 | 15 | 100 | 5 |
| Ազիզբեկով | 100 | 25 | 25 | 15 | 100 | 15 |
| Ալավերդի | 75 | 10 | 10 | 10 | 60 | 4 |
| Ալագյազ | 100 | 25 | 20 | 15 | 100 | 5 |
| Ախտա | 100 | 20 | 20 | 15 | 100 | 5 |

| Շրջանների և քաղաքների անունները | ՄԱՍՀԱՆՄԱՆ ՏՈԿՈՍՆԵՐԸ | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Շրջանառության հարկից | Կոլխոզների եկամտահարկից | Կոլխոզնիկների և մենատնտեսների գյուղատնտ. հարկից | Իրացված պետական մասսայական փոխառություններից | Ազգաբնակչության եկամտահարկից | Ռազմական հարկից |
| Ապարան | 100 | 25 | 25 | 15 | 100 | 5 |
| Արթիկ | 100 | 25 | 25 | 15 | 100 | 5 |
| Ախտա | 100 | 25 | 25 | 15 | 100 | 5 |
| Աշտարակ | 100 | 10 | 10 | 10 | 75 | 5 |
| Բասարգեչար | 100 | 20 | 20 | 15 | 100 | 5 |
| Բերդ | 25 | 10 | 25 | 10 | 60 | 5 |
| Վաղարշապատ | 35 | 10 | 10 | 10 | 45 | 5 |
| Վեդի | 100 | 25 | 10 | 15 | 100 | 5 |
| Գորիս | 100 | 70 | 65 | 40 | 100 | 5 |
| Ղուկասյան | 100 | 25 | 25 | 15 | 100 | 15 |
| Դիլիջան | 60 | 25 | 10 | 15 | 50 | 5 |
| Դուզքենդ | 100 | 25 | 25 | 15 | 100 | 5 |
| Ջանգիբասար | 100 | 50 | 30 | 20 | 100 | 10 |
| Իջևան | 100 | 40 | 25 | 25 | 100 | 5 |
| Կալինինո | 100 | 35 | 40 | 20 | 100 | 5 |
| Ղամարլու | 5 | 10 | 10 | 10 | 50 | 5 |
| Ղարաբաղլար | 100 | 25 | 25 | 15 | 100 | 5 |
| Ղափան | 100 | 50 | 60 | 45 | 100 | 40 |



| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| Կիրովական | 55 | 20 | 10 | 10 | 60 | 2 |
| Կոտայք | 100 | 25 | 25 | 15 | 100 | 5 |
| Կրասնոսելսկ | 100 | 25 | 35 | 10 | 100 | 4 |
| Մարտունի | 100 | 25 | 25 | 15 | 100 | 5 |
| Մեղրի | 70 | 25 | 25 | 10 | 80 | 5 |
| Միկոյան | 100 | 100 | 50 | 35 | 100 | 30 |
| Նոյեմբերյան | 100 | 50 | 45 | 25 | 100 | 10 |
| Նոր Բայազետ | 100 | 65 | 45 | 30 | 100 | 30 |
| Հոկտեմբերյան | 65 | 10 | 10 | 10 | 40 | 2 |
| Սևան | 75 | 25 | 25 | 10 | 60 | 5 |
| Սիսիան | 100 | 25 | 25 | 15 | 100 | 2 |
| Սպիտակ | 100 | 65 | 50 | 30 | 100 | 15 |
| Ստեփանավան | 60 | 10 | 10 | 10 | 100 | 2 |
| Թալին | 100 | 25 | 25 | 15 | 100 | 5 |
| Շամշադին | 100 | 45 | 65 | 45 | 100 | 15 |
| Քաղ. Լենինական | 2,5 | — | — | 10 | 25 | 2 |
| Քաղ. Երևան | 0,5 | 50 | 50 | 10 | 65 | 2 |

6. Հաստատել Հայկական ՍՍՌ պետական բյուջեի կատարման հաշվետվությունները 1941 թվականի ըստ եկամուտների՝ 558.579 հազար ռուբլի գումարով, ըստ ծախսերի՝ 553.462 հազար ռուբլի գումա-

րով, 1943 թվականի ըստ եկամուտների՝ 410.159 հազար ռուբլի գումարով, ըստ ծախսերի՝ 410.884 հազար ռուբլի գումարով։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝
Մ. ՊԱՊՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահության քարտուղար՝
Հ. ԳԱԼՈՒՍՏՅԱՆ

17 մարտի 1944 թ. ք. Երևան

# Օ Ր Ե Ն Ք

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ-ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏ ԿԱԶՄԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած «Արտաքին հարաբերությունների բնագավառում միութենական ռեսպուբլիկաներին լիազորություններ վերապահելու և այդ կապակցությամբ Արտաքին Գործերի ժողովրդական Կոմիսարիատը ընդհանուր-միութենականից միութենական-ռեսպուբլիկական ժողովրդական Կոմիսարիատի վերակազմելու մասին» Օրենքի համապա-



տասխան, Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետը ՈՐՈՇՈՒՄ է.

1. Կազմել Հայկական ՍՍՌ միութենական-ռեսպուբլիկական Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատ.

2. Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի մեջ մտցնել հետևյալ լրացումները.

ա) Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիան լրացնել 15-ա հոդվածով հետևյալ բովանդակությամբ.

«Հոդված 15-ա. Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան իրավունք ունի անմիջական հարաբերությունների մեջ մտնել օտարերկրյա պետությունների հետ, նրանց հետ կնքել համաձայնագրեր և փոխանակել դիվանագիտական ու հյուպատոսական ներկայացուցիչներ»։

բ) Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 18-րդ հոդվածը լրացնել «իե» կետով հետևյալ բովանդակությամբ.

«իե) Հայկական ՍՍՌ ներկայացուցչության սահմանում միջազգային հարաբերություններում».

գ) Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի

30-րդ հոդվածը լրացնել «թ» կետով և «ժ» կետով հետևյալ բովանդակությամբ.

«թ) Նշանակում է Հայկական ՍՍՌ դիվանագիտական ներկայացուցիչներ օտարերկրյա պետություններում և հետ է կանչում նրանց։

«ժ) Ընդունում է իրեն կից ակրեդիտացիայի ենթարկված օտարերկրյա պետությունների դիվանագիտական ներկայացուցիչների հավատարմագրերն ու հետկանչման թղթերը»։

դ) Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 44-րդ հոդվածը լրացնել «է» կետով հետևյալ բովանդակությամբ.

«է) Իրականացնում է ղեկավարություն օտարերկրյա պետությունների հետ Հայկական ՍՍՌ-ի ունեցած հարաբերությունների ասպարեզում, ելնելով միութենական ռեսպուբլիկաների և օտարերկրյա պետությունների փոխհարաբերությունների վերաբերյալ ՍՍՌ Միության ընդհանուր սահմանված կարգից»։

ե) Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 47-րդ և 53-րդ հոդվածները լրացնել



«Պաշտպանության» բառից հետո «Արտաքին Գործերի» բառերով։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի
Նախագահության Նախագահ՝
Մ. ՊԱՊՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի
Նախագահության Քարտուղար՝
Հ. ԳԱԼՈՒՍՏՅԱՆ

18 մարտի 1944 թ. ք. Երևան

# ՕՐԵՆՔ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ-ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏ ԿԱԶՄԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընդունած «Միութենական ռեսպուբլիկաների զորային կազմավորումներ ստեղծելու և այդ կապակցությամբ Պաշտպանության Ժողովրդական Կոմիսարիատը ընդհանուր-միութենականից միութենական-ռեսպուբլիկական Ժողովրդական Կոմիսարիատի վերակազմելու մասին» Օրենքի համապատասխան, Հայկական Սովետական Սոցիալիս-

տական Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետը ՈՐՈՇՈՒՄ է.

1. Կազմել Հայկական ՍՍՌ միութենական-ռեսպուբլիկական Պաշտպանության ժողովրդական Կոմիսարիատ.

2. Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի մեջ մտցնել հետևյալ լրացումները.

ա) Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիան լրացնել 15-բ. հոդվածով հետևյալ բովանդակությամբ.

«Հոդված 15-բ. Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան ունի իր ռեսպուբլիկական զորային կազմավորումները».

բ) Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 18-րդ հոդվածը լրացնել «Իզ» կետով հետևյալ բովանդակությամբ.

«Իզ) Հայկական ՍՍՌ զորային կազմավորումներ կազմելու կարգի սահմանումը».

գ) Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 44-րդ հոդվածը լրացնել «Ը» կետով հետևյալ բովանդակությամբ.

«Ը) Ղեկավարում է Հայկական ՍՍՌ զորային կազմավորումների կազմակերպումը».

դ) Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի 47-րդ հոդվածը «Հայկական ՍՍՌ ժողո-



վրդական Կոմիսարներ» բառերից հետո լրացնել «Պաշտպանության» բառով և 53-րդ հոդվածը՝ «Հայկական ՍՍՌ հետևյալ ժողովրդական Կոմիսարիատները» բառերից հետո լրացնել «Պաշտպանության» բառով:

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի
Նախագահության Նախագահ՝
Մ. ՊԱՊՅԱՆ

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի
Նախագահության քարտուղար՝
Հ. ԳԱԼՈՒՍՏՅԱՆ

18 մարտի 1944 թ. ք. Երևան

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ - ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ - ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏ ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼՈՒ ՄԱՍԻՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀ, ԴԵՊՈՒՏԱՏ Ա. Մ. ՄԱՐԳՍՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

Ընկեր դեպուտատներ.

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի 10-րդ սեսիայի ընդունած օրենքները Պաշտպանության Ժողովրդական Կոմիսարիատը և Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատը ընդհանուր-միութենականից միութենական-ռեսպուբլիկական կոմիսարիատների վերակազմելու մասին քաղաքական և պատմական կարևորագույն նշանակություն ունեն:



Այդ օրենքները փայլուն էջ են բաց անում Սովետական պետության լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության զարգացման պատմության մեջ: Այդ օրենքները Սովետական Մեծ Միության կազմի մեջ մտնող միութենական ռեսպուբլիկաների սուվերեն իրավունքների ցայտուն արտահայտությունն են հանդիսանում:

Մատնանշված պետական խոշոր վերակազմությունների իրագործումը Սովետական իշխանության տարիներին հնարավոր դարձավ շնորհիվ միութենական ռեսպուբլիկաների ազգային խոշոր զարգացման ու ամրացման, որպես արդյունք մեր ընդհանուր-միութենական պետության, Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության հսկայական աճման ու ամրապնդման:

«Երկրի պաշտպանության կազմակերպման և արտաքին հարաբերությունների բնագավառում կատարվող վերակազմությունների վերաբերյալ օրենքները, որոնք նախատեսում են միութենական ռեսպուբլիկաների ֆունկցիաների մեծ ընդլայնում, պետք է մի նոր ապացույց ծառայեն,— ասում է ընկ. Մոլոտովը,— Սովետական

Միության ամրության և աճման նկատմամբ ունեցած մեր վստահության:

Այդ վստահությունն առավել ևս ուժեղ կերպով է արտահայտվում նրանով, որ մենք առաջարկում ենք այդ վերակազմումները անցկացնել Հայրենական պատերազմի եռուն պահին, երբ այնքան մեծ է մեր ժողովուրդների ուժերի լարումը, և երբ ոչ ամեն մի պետություն կհամարձակվեր այդպիսի խոշոր վերակազմումների»:

Համաձայն Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի 10-րդ սեսիայի ընդունած օրենքների՝ միութենական ռեսպուբլիկաների զորային կազմավորումներ ստեղծելու և այդ կապակցությամբ Պաշտպանության Ժողովրդական Կոմիսարիատը ընդհանուր միութենականից միութենական-ռեսպուբլիկական ժողովրդական կոմիսարիատի վերակազմելու, միութենական ռեսպուբլիկաներին արտաքին հարաբերությունների բնագավառում լիազորություններ տալու և այդ կապակցությամբ Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատը ընդհանուր-միութենականից միութենական-ռեսպուբլիկական ժողովրդական կոմիսարիատի վե-



րակազմելու մասին, Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում պետք է ստեղծվեն Պաշտպանության միութենական-ռեսպուբլիկական Ժողովրդական Կոմիսարիատ և Արտաքին Գործերի միութենական-ռեսպուբլիկական Ժողովրդական Կոմիսարիատ:

Ընկեր դեպուտատներ. հայ ժողովուրդը Սովետական Միության հնագույն ժողովուրդներից մեկն է: Մեր ժողովրդի պատմությունն իրենից ներկայացնում է հերոսական պայքարի մի անընդհատ շղթա, պայքար, որ նա մղել է օտարերկրյա նվաճողների դեմ հանուն իր գոյության, հանուն իր ազատության ու անկախության և իր պետականության պահպանման:

Ո՛չ պարսիկների ու արաբների, սելջուկների ու մոնղոլների ավերիչ արշավանքները, ո՛չ էլ դաժան բռնությունների մռայլ տարիները չեն կարողացել ընկճել հայ ժողովրդի ազատության աննկուն կամքը և ռազմական ոգին:

Մի նոր շրջան է սկսվում մեր ժողովրդի պատմության մեջ այն օրից, երբ նա իր ճակատագիրը կապեց ռուս մեծ ժողովրդի հետ:

Հայ ժողովրդի կյանքում ամենալուսա-

վոր էջը բացվում է, երբ նա ապստամբեց դաշնակների տիրապետության դեմ և ռուս մեծ ժողովրդի ու հերոսական Կարմիր Բանակի օգնությամբ սովետական իշխանություն հաստատեց Հայաստանում:

Հայ ժողովուրդը սրանից 24 տարի առաջ նորից ձեռք բերեց իր ազգային պետականությունը, ազատվեց դարավոր ճնշումից և ստացավ իր էկոնոմիկայի, կուլտուրայի և արվեստի բուռն զարգացման հնարավորությունը: Սովետական իշխանության տարիներին փարթամորեն ծաղկեց մեր ռեսպուբլիկան, զարգացավ նրա արդյունաբերությունը, գյուղատնտեսությունն ու կուլտուրան: Տնտեսական ընդհանուր բարգավաճման բարենպաստ հողի վրա անսահման լավացավ Սովետական Հայաստանի աշխատավորության բարեկեցությունը: Ազգային իրավազրկության, տնտեսական աղքատության և դեգրադացիայի երբեմնի տարիները մնացին անվերադարձ անցյալում:

Լենինը և Ստալինը ստեղծեցին Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը— աշխարհում ամենաուժեղ բազմազգ պետությունը, կոփեցին Սովետական Միության ժողովուրդների անխոր-



տակելի բարեկամությունը— սոցիալիստական պետության ամրության հաստատ հիմքերից մեկը: Սովետական Միության ժողովուրդների մեծ բարեկամությունը դիմացավ բոլոր փորձություններին՝ Հոկտեմբերյան Մեծ Ռևոլյուցիայի և քաղաքացիական պատերազմների տարիներին: Ժողովուրդների այդ բարեկամությունն ամրապնդվեց խաղաղ շինարարության տարիներին: Նա անշեղ սիրով կապեց իրենց հայրենիքի հետ Սովետական Միության բոլոր ժողովուրդներին՝ գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող հայրենական մեծ պատերազմի դաժան օրերին:

Ահա թե ինչու հայրենական պատերազմի ահեղ օրերին մեր ամբողջ սովետական ժողովուրդը և նրա հերոսական Կարմիր Բանակը, համախմբված պարտիայի ու կառավարության և մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը, աննախընթաց անձնազոհությամբ աշխատում են թիկունքում և կատաղի պայքար են մղում ռազմաճակատներում, մաքրելով մեր սրբազան հողը ֆաշիստական աղտեղությունից:

Տապալվեցին Ֆաշիստական Գերմանիայի հույսերը Սովետական Միության ժողովուրդների մեջ պառակտումներ առաջ բե-

րելու մասին։ Ձախողվեցին նաև ֆաշիստների բոլոր ջանքերը Սովետական պետությունը ենթարկելու միջազգային մեկուսացման։ Գերմանական զավթիչների դեմ սովետական ժողովրդի և նրա Կարմիր Բանակի անօրինակ պայքարը բարձրացրեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության հեղինակությունն ամբողջ աշխարհի խաղաղասեր ժողովուրդների աչքում, խայտառակ կերպով տապալվեցին գերմանական իմպերիալիստների ավանտյուրիստական պլանները Սովետների երկրի դեմ խաչակրաց արշավանք կազմակերպելու առթիվ։

Գերմանական զավթիչների դեմ մղվող պայքարում մեր Հայրենիքը նվաճեց աշխարհի բոլոր ազատասեր ժողովուրդների, ամբողջ առաջադեմ մարդկության համակրանքը։ Հակառակ գերմանական ֆաշիստների ջանքերի, պատերազմի ընթացքում ստեղծվեց և ամրացավ աշխարհի երեք մեծ երկրների— Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, Մեծ Բրիտանիայի և Ամերիկայի Միացյալ Նահանգների մարտական դաշինքը։

Մեծ Ստալինի իմաստուն ղեկավարությամբ փառապանծ Կարմիր Բանակը հալ-



ածելով [illegible] օր-օրին ազատագրում է մեր սրբազան հողը գերմանական զավթիչներից և նրանց դուրս է վռնդում մեր հայրենիքի սահմաններից։

Հերոսական Կարմիր Բանակի առաջավոր զորամասերն արդեն մոտենում են Սովետական պետության արևմտյան սահմաններին, և հեռու չէ այն օրը, երբ մեր ամբողջ տերիտորիան կազատագրվի անարգ թշնամուց։

## ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Ընկեր դեպուտատներ․

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի 10-րդ սեսիան օրենք ընդունեց միութենական-ռեսպուբլիկական զորային կազմավորումները, որպես Կարմիր Բանակի բաղկացուցիչ մասեր, ստեղծելու և այդ կապակցությամբ, միութենական ռեսպուբլիկաներում Պաշտպանության Ժողովրդական Կոմիսարիատներ կազմակերպելու մասին։

«Միութենական ռեսպուբլիկաներում նոր զորային կազմավորումների ստեղծումը,— ասում է ընկեր Ստալինը,— որը նախապատրաստված է Սովետական Սոցիալիս-

*տական Ռեսպուբլիկաների Միության ժողովուրդների մարտական համագործակցությամբ Հայրենական պատերազմում և մեր պետության ամբողջ պատմությամբ, է՛լ ավելի կամրապնդի Կարմիր Բանակը և նրա շարքերի մեջ կմտցնի մարտական նորանոր ուժեր»:*

*Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում զորային կազմավորումների ստեղծումը և դրանից բխող, մեզ մոտ Պաշտպանության Ժողովրդական Կոմիսարիատի, որպես միութենական-ռեսպուբլիկական Կոմիսարիատի հիմնումը— նախապատրաստված է մեր ամբողջ նախընթաց զարգացումով և միանգամայն ժամանակին է:*

*Ունե՞նք արդյոք մենք բոլոր պայմանները մեր ռեսպուբլիկայում զորային կազմավորումներ ստեղծելու համար: Անկասկած՝ ունենք:*

*Հայ ժողովուրդը իր մարտական փառավոր տրադիցիաներով և Կարմիր Բանակի շարքերում կռվող հայ մարտիկների ու ականավոր զորավարների փորձով լիովին ի վիճակի է ստեղծել հզոր ու մարտունակ զորային կազմավորումներ, որոնք Կարմիր*



*Բանակի անբաժանելի մասը կհանդիսանան:*

*Հայրենական պատերազմի ճակատներում կռվել են հայ մարտիկների բազմաթիվ կադրեր, որոնք հիանալի կերպով տիրապետել են ժամանակակից ռազմական տեխնիկային: Հերոսական Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի շարքերում անձնուրաց կերպով կռվում են հազարավոր հայ տանկիստներ, հրետանավորներ, օդաչուներ, կապավորներ, սակրավորներ, ծովայիններ, որոնք շատ անգամ են փառքով պսակել սովետական զենքը:*

*Գերմանական զավթիչների դեմ մղվող այս սրբազան Հայրենական պատերազմում դրսևորվեցին մեր ժողովրդի այն բոլոր ազնիվ գծերը, որոնք զարգացել են նրա մեջ դարավոր պայքարի հետևանքով հանուն իր ազատության,— նրա անսահման սերը դեպի իր հայրենիքը, այրող ատելությունը դեպի թշնամին, արիությունը, նրա լավագույն զավակների զորավարական տաղանդը:*

*Արիության, քաջության ու խիզախության համար, ռազմական վարպետության համար մոտ 10 հազար հայ մարտիկներ ու սպաներ Սովետական կառավարության*

կողմից պարգևատրվել են շքանշաններով և մեդալներով:

Զորային կազմավորումների ստեղծման կարևոր նախապայմաններից մեկը հրամանատարական կադրի անհրաժեշտ կադրերի առկայությունն է:

Ունե՞նք արդյոք մենք այդ կադրերը: Այո, ունենք:

Կարմիր Բանակի շարքերում մենք ունենք բավական թվով հայ հրամանատարներ: Նրանք բազմաթիվ ճակատամարտերում կոփված, փորձված կադրային սպաներ են, որոնք կատարելապես տիրապետում են ժամանակակից մարտի բարդ տակտիկային և ստրատեգիային: Նրանք իրենց սովետական հայրենիքին նվիրված մարդիկ են, որոնք անձնվիրաբար կռվում են թշնամու դեմ, նրանցից շատերն արդեն տաղանդավոր զորավարների հռչակ են վայելում և սովետական գնդերը տանում են դեպի հաղթական մարտ ընդդեմ թշնամու:

Մարտական հռչակ է ձեռք բերել գեներալ-մայոր Սաֆարյանի՝ հայերից կազմված դիվիզիան, որն արժանացավ «Թամանյան» կոչվելու բարձր պատվին:

409-րդ Կիրովոգրադյան դիվիզիան անմիջական մասնակցություն ունեցավ Ուկ-



րաինայի արդյունաբերական խոշոր կենտրոնի՝ Կիրովոգրադի ազատագրման գործին:

Սովետական Միության հերոսների ընտանիքում իրենց պատվավոր տեղն են գրավում 30-ից ավելի հայ հերոսներ: Ստալինյան փառապանծ գեներալիտետում կա մոտ 40 հայ գեներալ:

Կարմիր Բանակի շարքերում մարտնչող հայ հրամանատարները գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող հայրենական պատերազմի օրերին հավատարիմ են մնում հռչակ ստացած հայ ռազմիկների մարտական տրադիցիաներին: Ինչպես վերջին երեք դարերի ընթացքում, այնպես էլ մեր օրերում, հայ սպաները, գեներալները մեր ժողովուրդների ծանր փորձությունների տարիներին եղել են ու մնում են ռուս զորականության հավատարիմ զինակիցները ընդհանուր թշնամու դեմ մղվող պայքարում:

Հայտնի է, որ դեռ 1812 թվականի հայրենական պատերազմում Կուտուզովի բանակում իրենց անունը անմահ փառքով պսակեցին հայ գեներալներ Մադաթովը, Դիլյանովը, Մելիքովը, Աբամելիքը և ուրիշները:

1877—1878 թվականի ռուս-թյուրքական պատերազմում ռուսական բանակի կազմում աչքի ընկան որպես տաղանդավոր զորավարներ՝ հայ գեներալներ Լորիս-Մելիքովը, Տեր-Ղուկասովը, Լազարևը և ուրիշները։

Մեր օրերում Սովետական Միության ժողովուրդները հպարտությամբ են խոսում ստալինյան տաղանդավոր զորավար, բանակի գեներալ Բաղրամյանի մասին, որի հմուտ ղեկավարությամբ Մերձբալթյան ռազմաճակատի զորքերը հաղթականորեն շարժվում են դեպի Արևմուտք։

Ընկեր դեպուտատներ. դեռ պատերազմից առաջ և առանձնապես պատերազմի շրջանում խոշոր ու արդյունավետ աշխատանք ծավալվեց մեր քաղաքների, գյուղական վայրերի բնակչությանը ինքնապաշտպանության պատրաստելու ուղղությամբ։ Զգալի աշխատանք են կատարել ռազմպարտուսը, Պաշը-Ավիաքիմը, Տեղական Հակաօդային Պաշտպանության կազմակերպությունները, ինչպես նաև մեր ուսումնական հիմնարկները բնակչության ռազմական պատրաստության մակարդակը բարձրացնելու, ինքնապաշտպանության



միջոցներին և մարտական զենքին տիրապետելու գործում։

Իրենց Հայրենիքի պաշտպանության հայրենասիրական ձգտումով համակված մեր ռեսպուբլիկայի համարյա ամբողջ աշխատունակ բնակչությունը, տղամարդիկ և կանայք, ներգրաված են ռազմական գործի ուսումնասիրության մեջ։

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Պաշտպանության միութենական-ռեսպուբլիկական Ժողովրդական Կոմիսարիատը նոր զարկ կտա մեր ռեսպուբլիկայում բնակչության ռազմական ուսուցմանը և առաջին հերթին, երիտասարդության ռազմական ուսուցման հետագա կատարելագործմանը դպրոցներում ու բարձրագույն ուսումնական հաստատություններում. մի նոր խթան կհանդիսանա պանծալի Կարմիր Բանակի համար նոր կադրեր պատրաստելու և ուսուցանելու, դրանց ժողովուրդների ստալինյան բարեկամության և դեպի սովետական հայրենիքի թշնամիները անհաշտության ոգով դաստիարակելու գործում։

Հայաստանի աշխատավորները մեծ սիրով և ուշադրությամբ կշրջապատեն

Պաշտպանության միութենական-ռեսպուբլիկական Ժողովրդական Կոմիսարիատը:

Հայ ժողովուրդը Անդրկովկասի մյուս ժողովուրդների հետ միասին մշտապես կկրե իր սրտում սերը և մեծ երախտապարտության զգացմունքը դեպի հերոսական Կարմիր Բանակը, որը 1942 թ. աշնանը ջախջախեց թշնամուն և դուրս վռնդեց Կովկասից, դրանով իսկ փրկեց Հայաստանը, Վրաստանն ու Ադրբեջանը գերմանա-ֆաշիստական ավերիչ ներխուժումից:

Մենք փառաբանում ենք մեր Կարմիր Բանակը, որը պաշտպանեց մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան, ջարդեց գերմանացիներին Ստալինգրադի տակ, ազատագրեց Սովետական ռեվոլյուցիայի օրրան Լենինգրադը թշնամու պաշարումից:

Իսկ այժմ Կարմիր Բանակի զորքերը թշնամու կենդանի ուժին և տեխնիկային մեծ կորուստներ պատճառելով, հաստատ ոտք են դրել Ռումինիայի հողը, թշնամուց քայլ առ քայլ մաքրում են եղբայրական Բելոռուսիան, մոտենում են Սովետական Լատվիային և Լիտվային:

Ուկրաինական ռազմաճակատի փառապանծ զորքերը գրավելով Ումանը, Վապ-



նյարկա քաղաքը և խոշոր երկաթուղային հանգույցը, Սևծովյան նշանավոր նավահանգիստ Խերսոնը, անցնելով Հարավային Բուգը, թշնամուն սեղմում են Դնեստրի և Սև ծովի ափերին ու հաղթականորեն մոտենում Բեսարաբիայի, Մոլդավիայի սահմաններին:

Մեր ժողովուրդը սիրում է իր Կարմիր Բանակին, իր պատվի ու ազատության պաշտպանին, նա, չխնայելով իր ուժերը, աշխատում է թիկունքում՝ ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլխոզներում ու սովխոզներում, է՛լ ավելի ուժեղացնելով Կարմիր Բանակի հզորությունը, մատակարարելով նրան ռազմական տեխնիկա, հանդերձանք և պարենամթերք:

«Ռեսպուբլիկաների զորամասերի կազմակերպումը,— ասում է ընկ. Մոլոտովը,— պետք է ծառայի մեր բանակի՝ որպես մեր հայրենիքի պաշտպանի, որպես Սովետական Միության հուսալի հենարանի հետագա ամրապնդմանը: Սովետական Միության թշնամիները կարող են չտարակուսել, որ այդ նոր զորային կազմավորումների հետևանքով մեր պետության ուժերը է՛լ ավելի կամրապնդվեն: Դա նրանց կստիպի այսուհետև ավելի զգույշ

լինել: Սովետական Միության ժողովուրդների ամրապնդվող բարեկամության այդ նոր մարմնավորումը կնպաստի մեր երկրի հեղինակության հետագա աճմանը Արևելքի և Արևմուտքի ժողովուրդների աչքում»:

## ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐԻԱՏԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Ընկեր դեպուտատներ.

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի 10-րդ սեսիայի ընդունած մյուս կարևոր օրենքը միութենական ռեսպուբլիկաներին արտաքին հարաբերությունների ասպարեզում լիազորություններ տալու և այդ կապակցությամբ, Արտաքին Գործերի ժողովրդական Կոմիսարիատը ընդհանուր-միութենականից միութենական-ռեսպուբլիկական ժողովրդական Կոմիսարիատի վերակազմելու մասին ընդունված օրենքն է:

Մատնանշված օրենքին համապատասխան, այս սեսիայի քննարկմանն է մտցվում Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում Արտաքին Գոր-



ծերի միութենական-ռեսպուբլիկական ժողովրդական Կոմիսարիատ ստեղծելու հարցը:

Ինչպես ձեզ հայտնի է, մինչև 1922 թվի դեկտեմբերը, այսինքն մինչև Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կազմակերպման մոմենտը, առանձին սովետական ռեսպուբլիկաներում և այդ թվում Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում գոյություն ունեին Արտաքին Գործերի ժողկոմատներ: Այն ժամանակ սովետական եղբայրական ռեսպուբլիկաները դեռևս չէին միավորվել ընդհանուր միութենական պետության մեջ. ուստի և որոշ դեպքերում օտարերկրյա պետությունների հետ արտաքին հարաբերությունները նրանք իրականացնում էին իրենք անմիջականորեն:

Բայց եղբայրական սովետական ռեսպուբլիկաների շահերը, թե տնտեսական-քաղաքական զարգացման և թե նրանց արտաքին հարձակումներից պաշտպանելու տեսակետից, պահանջում էին առանձին ռեսպուբլիկաները միավորել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ: Պետական միավորման այս նոր ձևը Սովետական Սոցիալիստական Ռես-

պուբլիկաների Միությունը— եղբայրական համագործակցությամբ, իր մեջ համախմբեց մեր մեծ երկրում բնակվող բոլոր ազգություններին ու ժողովուրդներին, որոնք ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ անցան իրենց ազգային զարգացման հոյակապ ուղին:

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը կազմակերպելիս միութենական ռեսպուբլիկաների համաձայնությամբ որոշվեց մեկ կենտրոնում միավորել օտարերկրյա պետությունների հետ արտաքին հարաբերություններ վարելու գործը: Միութենական կառավարության կից ստեղծվեց Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատ, որը բոլոր միութենական ռեսպուբլիկաների անունից արտաքին հարաբերությունների մեջ էր մտնում օտարերկրյա պետությունների հետ:

Այս էտապի համար Միութենական բոլոր ռեսպուբլիկաների անունից իրագործվող միասնական դիվանագիտական ներկայացուցչությունն ունեցավ դրական նշանակություն և ամրապնդեց մեր պետությունը, բարձրացրեց նրա դերը միջազգային գործերում:



Մեր սովետական պետության աճումն ու ամրապնդումը և քաղաքական ու տնտեսական կյանքի բարձրացումը զուգընթաց նրա գոյության ամբողջ ընթացքում աճել է Սովետական Միության հեղինակությունը աշխարհի խաղաղասեր ժողովուրդների աչքում:

Առանձնապես ընդարձակվեցին ու ամրապնդվեցին Սովետական պետության միջազգային կապերն ու հարաբերությունները Հայրենական պատերազմի պայմաններում: «Բոլոր ազատասեր երկրների ժողովուրդները,— ասում է ընկեր Ստալինը,— նայում են սովետական Միության վրա իբրև մի ուժի, որն ընդունակ է աշխարհը փրկելու հիտլերյան ժանտախտից»:

Անցել են այն ժամանակները, երբ մի շարք օտարերկրյա պետություններ աշխատում էին չնկատել Հոկտեմբերի ծնունդ երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի գոյությունը: Օտարերկրյա պետությունների մեջ ներկայումս աճում է Սովետական Միության հետ դիվանագիտական հարաբերություններ հաստատելու և զար-

դացնելու ձգտումը: Չնայած այն բանին, որ պատերազմը դժվարացնում է միջազգային կապերն ու հարաբերությունները, բայց մենք ընդհակառակը, պատերազմի պայմաններում տեսնում ենք օտարերկրյա պետությունների հետ հաստատվող այդ կապերի զգալի ընդարձակումն և ամրապնդումը: Մենք ոչ միայն բարեկամական, այլև դաշնակցային հարաբերություններ ենք հաստատել Մեծ Բրիտանիայի հետ: Սերտ հարաբերություններ են հաստատված նաև Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ: Պատերազմի ընթացքում ստեղծվեց դեմոկրատական պետությունների մարտական դաշինք՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, Մեծ Բրիտանիայի և Ամերիկայի Միացյալ Նահանգների գլխավորությամբ, ուղղված հիտլերյան Գերմանիայի և նրա արբանյակների դեմ: Վերջերս կնքվեց Սովետա-Չեխոսլովակյան բարեկամության և փոխադարձ օգնության դաշինք: Մոսկվայի և Թեհրանի կոնֆերանսները կարևորագույն տեղ գրավեցին հակահիտլերյան կոալիցիայի զարգացման և ամրապնդման գործում: Դրված են մեծ և մանր դեմոկրատական երկրների համագործակցության



հիմքերը ոչ միայն պատերազմի ժամանակ ընդհանուր թշնամու դեմ մղվող պայքարում, այլև հետպատերազմյան շրջանի համար ագրեսիվ պետությունների նոր ոտնձգություններից խաղաղությունը պահպանելու նպատակով:

«Եվ այնուամենայնիվ,— ասում է ընկեր Մոլոտովը,— չի կարելի ասել, որ Սովետական Միության միջազգային կապերի զարգացման այդ ընդհանուր, դրական ընթացքը կարող էր լրիվին ընդգրկել ոչ միայն ընդհանուր միութենական կարիքները, այլև միութենական ռեսպուբլիկաների բազմազան և աճող պահանջները արտաքին գործերում: Միութենական ռեսպուբլիկաները, օրինակ, ունեն անտեսական և կուլտուրական ոչ քիչ սպեցիֆիկ կարիքներ, որոնք չեն կարող լրիվին ընդգրկվել ընդհանուր-միութենական արտասահմանյան ներկայացուցչությամբ, ինչպես նաև այլ պետությունների հետ դաշնագրերով ու համաձայնագրերով: Ռեսպուբլիկաների այդ ազգային պահանջները կարող են ավելի լավ բավարարվել համապատասխան պետության հետ ռեսպուբլիկաների ուղղակի հարաբերությունների միջոցով»:

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում ստեղծված Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատը, որի ֆունկցիայի մեջ կմտնի մի շարք հարցերում օտարերկրյա պետությունների հետ անմիջական հարաբերություն պահպանելը, նրանց հետ համաձայնագրեր և դիվանագիտական ու հյուպատոսական ներկայացուցիչներ փոխանակելը, կոչված է հատկապես լուծելու տնտեսական և կուլտուրական մի շարք առանձնահատուկ հարցեր, որոնք կարող են առաջանալ մեր և օտարերկրյա պետությունների միջև: Մեր ռեսպուբլիկայի աշխատանքի պրակտիկան ցույց է տալիս, որ քիչ չեն այնպիսի հարցերը, որոնք լուծման են սպասում նոր միութենական-ռեսպուբլիկական Արտաքին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատի միջոցով:

Միութենական ռեսպուբլիկաներին օտարերկրյա պետությունների հետ անմիջական հարաբերություններ ունենալու լիազորություններ վերապահելը լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության մի նոր հաղթանակ է, այդ միջազգային կարևոր նշանակություն ունեցող փաստ է: Միութենական ռեսպուբլիկաների Արտա-



քին Գործերի Ժողովրդական Կոմիսարիատների աշխատանքն ավելի լայնորեն կծավալի Սովետական Միության միջազգային կապերը դեմոկրատական պետությունների հետ, կօգնի էլ ավելի համախմբելու հակահիտլերյան կոալիցիայի ուժերը և ավելի արագ ջախջախելու ֆաշիստական ուժերը Եվրոպայում:

***

Ընկեր դեպուտատներ.

Մենք իրականացնում ենք կարևորագույն պետական վերակազմավորություններ Հայրենական պատերազմի պայմաններում: Սովետական Ռեսպուբլիկաների իրավունքների ընդարձակումը՝ զորային կազմավորումներ ստեղծելու և արտաքին հարաբերությունների բնագավառում, այդ իրավունքների օրենսդրական ամրապնդումը Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի 10-րդ սեսիայի կողմից — Սովետական պետության ուժի ու հզորության ամենացայտուն ապացույցն է, մեր պետական սիստեմի խակական դեմոկրատական հիմքերի դրսևորումն է:

«Սովետական իշխանության այս քայլը, — ասում է ընկեր Մոլոտովը, — մի նոր

բարոյական-քաղաքական հարված կլինի ֆաշիզմին և նրա մարդատյաց քաղաքականությանը, որոնք խորապես թշնամի են ժողովուրդների ազգային ազատ զարգացման շահերին»:

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Ժողովրդական Կոմիսարների Սովետի կողմից Գերագույն Սովետի 8-րդ սեսիայի քննարկմանն ու հաստատմանը ներկայացվող օրենքների նախագծերը նախատեսում են Պաշտպանության միութենական-ռեսպուբլիկական Ժողովրդական Կոմիսարիատի և Արտաքին Գործերի միութենական-ռեսպուբլիկական Ժողովրդական Կոմիսարիատի կազմակերպումը Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայում, ինչպես նաև որոշ փոփոխություններ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի Կոնստիտուցիայի մեջ, որոնք բխում են Միության Գերագույն Սովետի 10-րդ սեսիայի ընդունած օրենքներից:

Զորային կազմավորումների ստեղծման և արտաքին հարաբերությունների ընդարձակման մասին այն կարևորագույն որոշումների նախագծերը, որ ներկայացվում են Հայկական Սովետական Սոցիալիստական



Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի ներկա սեսիայի քննարկմանը, լիովին արտահայտում են հայ ժողովրդի կամքը: Ամբողջ վստահությամբ կարելի է հայտարարել, որ այդ օրենքները միահամուռ հավանություն կգտնեն Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների կողմից:

Սովետական Միության ժողովուրդները, այդ թվում և հայ ժողովուրդը, է՛լ ավելի սերտորեն կհամախմբվեն պարտիայի ու կառավարության, սիրելի առաջնորդ մեծ Ստալինի շուրջը և կուռ շարքերով, բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ, Լենինի-Ստալինի անպարտելի դրոշի ներքո կընթանան դեպի վերջնական հաղթանակ՝ ընդդեմ գերմանա-ֆաշիստական զավթիչների: (Բուռն ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում և օվացիա սարքում ի պատիվ մեծ Ստալինի):

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏՈՒՄ ԵՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1944 Թ. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԻ ՊԼԱՆԻ ՄԱՍԻՆ

*Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը 1944 թվի փետրվարի 28-ի որոշմամբ 1944 թվի գյուղատնտեսական աշխատանքների պլանը հաստատեցին հետևյալ ցուցանիշներով.*

## 1. ՑԱՆՔԱՏԱՐԱԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

### Ա. Կոլխոզներում

*ա) Հացահատիկային կուլտուրաներ, ընդամենը* — 358,6 *հազար հեկտ.*

*Այդ թվում աշնանացան* 1944 *թվի բերքի տակ* — 191,066 *հեկտար*

*Գարնանացան* 167,534 *հեկտար*

Որից՝

| | | | |
|---|---|---|---|
| *Ցորեն* | 70,0 | *հազ.* | *հեկտ.* |
| *Կորեկ* | 2,0 | » | » |
| *Բրինձ* | 1,5 | » | » |
| *Եգիպտացորեն* | 2,0 | » | » |
| *Հաճար* | 35,0 | » | » |



| | | | |
|---|---|---|---|
| *Վիկա սերմացու* | 0,5 | » | » |
| *Ընդեղեն* | 5,5 | » | » |

Այդ թվում՝

| | | | |
|---|---|---|---|
| *Լոբի* | 2,0 | *հազ.* | *հեկտ.* |
| *Ոսպ* | 1,0 | » | » |
| *Այլ ընդեղեն* | 2,5 | » | » |

*բ) Տեխնիկական կուլտուրաներ, ընդամենը* 36,3 *հազ. հեկտ.*

Այդ թվում՝

| | | | |
|---|---|---|---|
| *Բամբակ* | 13,5 | *հազ* | *հեկտ.* |
| *Խորդենի* | 0,2 | » | » |
| *Ծխախոտ* | 8,0 | » | » |
| *Շաքարի ճակնդեղ* | 3,0 | » | » |
| *Գանգրավուշ* | 10,0 | » | » |
| *Արևածաղիկ* | 1,0 | » | » |
| *Դալմաթյան երիցուկ* | 0,3 | » | » |
| *Մախորկա նիկոտինի* | 0,3 | » | » |

*գ) Կերաբույսեր, ընդամենը* 50 *հազ. հեկտ.*

Այդ թվում՝

| | | | |
|---|---|---|---|
| *Միամյա խոտաբույսեր* | 1,0 | *հազ.* | *հեկտ.* |
| *Սիլոսային* | 1,5 | » | » |
| *Արմատապտուղներ* | 1,5 | » | » |
| *Բազմամյա խոտաբույսեր առանց ենթացանքի* | 1,0 | » | » |
| *Անցյալ տարիների բազմամյա խոտաբույսերի* | | | |

Հնձվող տարածու-
թյուն 45,0 հազ. հեկտ.

գ) Բանջարա-բոստանա-
յին կուլտուրաներ, ըն-
դամենը— 21,5 հազ. հեկտ.

Այդ թվում՝

Կարտոֆիլ 14,0 հազ. հեկտ.
Բոստանային կուլտու-
րաներ 1,5 » »
Բանջարեղեն 6,5 » »

Որից՝

Կաղամբ 2,0 հազ. հեկտ.
Սոխ 0.8 » »

ե) Ընդամենը գարնանային
կուլտուրաների ցանք
անցյալ տարիների խո-
տացանքերի հետ միասին 275.334 հեկ.

զ) Գարնանային և աշնա-
նային կուլտուրաներ
ընդամենը 466.400 հեկտար

Բացի դրանից, բազմամյա
խոտաբույսերի ենթա-
ցանք 19.100 հեկտար

է) Աշնանացան 1945 թվի
բերքի համար 190.000 հեկտար



Բ. Կոլխոզնիկների տնամերձ հողերում

Ընդամենը ցանքեր 6,5 հազ. հեկտ.
Այդ թվում՝
Կարտոֆիլ 6,0 » »
Բանջարա-բոստանա-
յին կուլտուրաներ 1,5 » »

Գ. Անհատական սեկտորում

Ընդամենը գարնանացան 1,0 հազ. հեկտ.
Այդ թվում՝
Հացահատիկ 1,0 » »

2. ԿԵՐԱՀԱՅԹԱՅԹՈՒՄ

ա) Սիլոսացում 100 հազ. տոննա
բ) Բնական խոտհարք-
ների խոտհունձ 200 հազ. հեկտ.
գ) Կոշտ կերերի կու-
տակման պլանը խոտի
վերածած 700 հազ. տոննա

3. ԲԱԶՄԱՄՅԱ ՏՈՒՆԿԵՐ

ա) Խաղողի այգիներ
գցելը 1,0 հազ. հեկտ.
Այդ թվում՝ գարնան 0,3 » »
աշնան 0,7 » »
բ) Խաղողի մատի
տնկարան 100 հեկտար

գ) Պտղատու այգիներ գցել 700 հեկտար
Այդ թվում՝ գարնան 500 »
աշնան 200 »
դ) Պտղատու ծառերի տնկարան 50 »
Այդ թվում՝ գարնան 20 »
աշնան 30 »
ե) Հատապտուղների տունկ 50 »
զ) Գարնանային անտառատունկ կոլխոզներում 50 »
է) Անտառային տնկարան 10 »

Թթագործություն

Թթենու ցանք 3 հեկտար
Շելկվանների տունկ 20 »
Թթենու շիվերի տունկ 500 հազ. հատ
Թփային պլանտացիաների տունկ 100 հեկտար

## 4. ԲԱԶՄԱՄՅԱ ԽՈՏԵՐԻ ՍԵՐՄՆԱԲՈՒԾՈՒԹՅՈՒՆԸ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ

Բազմամյա խոտաբույսերի սերմնադաշտեր ընդամենը 8 հազ. հեկտ.
Այդ թվում՝
Կորնգան 6.8 » »



Առվույտ 1.0 » »
Երեքնուկ 0,1 » »
Արոտավայրային մարգագետիններ 0,1 » »

## 5. 1944 ԹՎԻՆ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ ԿԱՏԱՐՎՈՂ ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԸ

ա) Մաքուր ցելերի վար 55 հազ. հեկտ.
բ) Ցրտահերկ 150 » »
գ) Յարովիզացված սերմերով հացահատիկի ցանք 40 » »
դ) Հացահատիկի գարնան շարքացան 57 » »
ե) Հացահատիկի աշնան շարքացան 70 » »
զ) Սև ցել 10 » »
է) Տեղական պարարտանյութերի փոխադրում 1500 հազ. տոն.
ը) Ընդեղենի նիտրագինացում 15 հազ. հեկտ.
թ) Պարարտացում ազոտով 10 » »

## 6. ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՄԵԿ ՀԵԿՏԱՐԻ ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ

| | | |
|---|---|---|
| Հացահատիկներ | 10 | ցենտներ |
| Բամբակ | 13 | » |
| Ծխախոտ | 7 | » |
| Շաքարի ճակնդեղ | 160 | » |
| Արևածաղիկ | 8 | » |
| Գանգրավուշ | 3 | » |
| Կարտոֆիլ | 80 | » |
| Խաղող | 70 | » |
| Կորիզավոր մրգեր | 60 | » |
| Սերմավոր մրգեր | 50 | » |
| Սիլոսային բույսեր | 93 | » |
| Բազմամյա խոտաբույսեր | 30 | » |
| Միամյա խոտաբույսեր | 20 | » |
| Բնական խոտհարքներ | 13 | » |
| Արմատապտուղներ | 200 | » |
| Կորնգանի սերմ | 4,5 | » |
| Երեքնուկի սերմ | 1,5 | » |
| Առվույտի սերմ | 1,5 | » |

## 7. ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐԻ ՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ

Տրակտորային աշխատանքների ծավալը (առանց կալսելու, պայմանական վարի վերածած) 325 հազ. հեկտ.



| | | | |
|---|---|---|---|
| ա) Այդ թվում՝ | | | |
| Գարնանավար և կրկնավար | 65 | հազ. | հեկտ. |
| Նախացանքային կուլտիվացիա | 10 | » | » |
| Գարնանացան | 25 | » | » |
| Աշնանացան | 35 | » | » |
| Մաքուր ցելերի վար | 35 | » | » |
| Ցելերի կուլտիվացիա | 20 | » | » |
| Շարքահերկ կուլտուրաների կուլտիվացիա | 45 | » | » |
| Կոմբայնով բերքահավաք | 35 | » | » |
| Ցրտահերկ | 65 | » | » |
| բ) Կալսիչ մեքենայով կալսում | 70 | հազ. | տոն. |

## 8. ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

Կոլխոզների անասնաբուծության զարգացման 1944 թվի պլանը (առանց հաշվի առնելու անասունների ուղարկումը ազատագրված շրջանները):

| | | | |
|---|---|---|---|
| ա) Խոշոր եղջերավոր անասուններ | 305 | հազ. | գլխ. |
| Այդ թվում՝ | | | |
| Կով | 53 | » | » |
| Եզ | 110 | » | » |
| բ) Ոչխար և այծ | 830 | » | » |

Այդ թվում՝

Մայր ոչխարներ և այծեր — 452 հազ. գլխ.

գ) Խոզ — 31 » »

Այդ թվում՝

9 ամսական հասակից բարձր մայր խոզեր — 10 » »

դ) Էշ — 3 » »

ե) Թռչուն (մեծահասակ) — 125 » »

զ) Մայր ճագարներ 850 գլուխ

է) Փեթակ 50 հազար

9. Հաստատել ֆերմաները կոմպլեկտավորելու համար խոշոր եղջերավոր անասունների գնման ու կոնտրակտացիայի 1944 թ. պլանը 25 հազ. գլուխ:

10. Հաստատել ծնի համար պետական զամբիկների 100 տոկոսանի զուգավորման պլանը, այդ թվում հիբրիդիզացիա 450 գլուխ:

11. Հաստատել 1944 թվի մայր անասունների զուգավորման պլանը.

ա) Խոշոր եղջերավոր անասուններ — 60 հազ. գլուխ

բ) Մայր ոչխարներ — 392 » »



գ) Մայր այծեր — 60 » »

դ) Մայր խոզեր — 12 » »

12. Հաստատել տոհմային անասունների գնման ու վաճառման պլանը կոլխոզներում.

ա) Ընդամենը տոհմային մարուքներ — 10 գլուխ

բ) Ընդամենը տոհմային ցուլիկներ — 500 »

Այդ թվում՝

Շվիցներ — 435 »

Սիմենթալներ — 65 »

գ) Տոհմային հորթեր — 100 »

Այդ թվում՝

Շվիցներ — 70 »

Սիմենթալներ — 30 »

դ) Տոհմային խոյեր — 350 »

Այդ թվում՝

Կարակուլի — 150 »

Բալբաս — 100 »

Պրեկոս — 100 »

ե) Անգորական նոխազներ — 100 »

Անգորական այծեր — 100 »

զ) Տոհմային խոզեր — 100 »

Այդ թվում՝

| | | |
|---|---|---|
| *Վարազներ* | 50 | *գլուխ* |
| *Մայրացու խոզեր* | 50 | » |

13. Հաստատել անասունների մթերատվության բարձրացման, խոզերի գիրացման և ամորձատված աջաններ անեցնելու պլանը.

*ա) Ֆուրաժային կովի տարեկան միջին կաթնատվությունը* 700 *լիտր,*

*բ) Ֆուրաժային մայր ոչխարի տարեկան միջին կաթնատվությունը* 50 *լիտր,*

*գ) Տարվա սկզբին առկա մեկ ոչխարի բրդի միջին խուզը* 1,8 *կիլոգրամ,*

*դ) Տարվա՝ սկզբին առկա մեկ այծի բրդի միջին խուզը* 0,5 *կիլոգրամ,*

*ե) Մեկ փեթակի համախառն մեղրը* 30 *կիլոգրամ:*

Այդ թվում՝

| | | |
|---|---|---|
| *Ապրանքային մեղրը* | 10 | *կիլոգրամ* |
| *Մոմի համախառն արտադրանքը* | 0,6 | *կիլոգրամ* |

*զ) Թռչունների ձվատվությունը*

| | | |
|---|---|---|
| *Հավերինը* | 70 | *հատ* |
| *Բադերինը* | 35 | » |
| *Հնդկահավերինը* | 25 | » |
| *Սագերինը* | 20 | » |

14. *Ամորձատված աջաններ անեցնելու պլանը հաստատել* 2.000 *գլուխ:*



15. *Խոզերի գիրացման պլանը, գիրացած մեկ խոզի կենդանի քաշը հասցնելով* 60 *կիլոգրամի, հաստատել* 8.000 *գլուխ:*

16. *Անասնապահական շենքերի շինարարության պլանը հաստատել ընդամենը* 360 *օբեկտ, այդ թվում* 130 *գոմ,* 80 *ոչխարանոց,* 60 *խոզանոց,* 90 *հավանոց:*

17. *Առաջարկել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝* 1944 *թվի գյուղատնտեսական աշխատանքների պլանը* 3 *օրում հասցնել առանձին շրջաններին և ՄՏ կայաններին:*

*Շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին, շրջհողբաժիններին և ՄՏ կայանի դիրեկտորներին՝ վերոհիշյալ պլանները* 5 *օրում հասցնել կոլխոզներին:*

18. *Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին, շրջհողբաժիններին և ՄՏ կայանների դիրեկտորներին՝ խիստ վերահսկողություն հաստատել գյուղատնտեսական աշխատանքների պլանների կատարման նկատմամբ, գարնանային աշխատանքների շրջանում լրիվին կատարել ագրոկանոնները և ապահովել դաշտային բոլոր աշխատանքների բարձրո-*

րակ կատարումը ամենասեղմ ժամկետներում։

19. Առաջարկել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, տասնօրյա ժամկետում Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի քննարկմանը ներկայացնել գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարելու 1944 թվի պլանը։

20. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին, շրջհողբաժիններին և ՄՏ կայանների դիրեկտորներին՝ ապահովել բոլոր կոլխոզներում տեղական պարարտանյութերի դաշտ փոխադրումը, պարարտացման պլանները կատարելով ոչ ուշ քան 1944 թ. մարտի 20-ը։ Կոլխոզներում սիստեմատիկ վերահսկողություն սահմանել դաշտ փոխադրվող տեղական պարարտանյութերի որակի նկատմամբ, ինչպես նաև թույլ չտալ պարարտանյութի փոխադրումը միայն կոլխոզի մոտակա հողամասերը։

21. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, շրջսովետների գործկոմներին, պարտիայի շրջկոմներին, մինչև 1944 թվի մարտի 10-ը ապահովել հացա-

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԿՈԼԽՈԶՆԵՐՈՒՄ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1944 Թ. ՊԼԱՆԸ

| Շրջաններ | Խոշոր եղջերավոր անասուն: Ընդամ. | Այդ թվում: Կով | Այդ թվում: Եզ | Ոչխար և այծ: Ընդամ. | Այդ թվում: Մայր ոչխար և այծ | Խոզ: Ընդամ. | Այդ թվում: Խնն. մատակներից վերարտադրման մայրեր | Թռչուն: Մեծահասակ | Մայր մեղու | Փեթակ |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1. Աղին | 5750 | 800 | 2200 | 13500 | 7000 | 250 | 85 | 3200 | — | 1300 |
| 2. Ազիզբեկով | 5850 | 950 | 2650 | 17600 | 9300 | 30 | 25 | 1600 | — | 2450 |
| 3. Ալավերդի | 12000 | 2200 | 3500 | 24300 | 14000 | 2330 | 720 | 5000 | 50 | 3000 |
| 4. Ալագյազ | 4750 | 850 | 1750 | 12500 | 6800 | 100 | 60 | 1800 | — | 500 |
| 5. Ամասիա | 8350 | 2000 | 2650 | 25200 | 14000 | 160 | 60 | 2600 | — | 1050 |
| 6. Ապարան | 7150 | 1000 | 2900 | 23500 | 12800 | 360 | 100 | 2000 | — | 750 |
| 7. Արթիկ | 7850 | 1000 | 3540 | 16100 | 9000 | 750 | 230 | 4800 | 50 | 2300 |
| 8. Ախտա | 8300 | 1000 | 3850 | 17600 | 10000 | 680 | 200 | 3100 | 170 | 2000 |
| 9. Աշտարակ | 8200 | 1400 | 3100 | 16600 | 9300 | 120 | 30 | 3800 | 25 | 1650 |
| 10. Բասարգեչար | 11100 | 1500 | 4200 | 27100 | 15900 | 530 | 180 | 2500 | 40 | 1800 |
| 11. Բերիա | 1770 | 500 | 450 | 6000 | 3200 | 170 | 50 | 2000 | — | 400 |
| 12. Վաղարշապատ | 4400 | 1050 | 1150 | 11600 | 6000 | 150 | 55 | 3000 | 40 | 900 |
| 13. Վեդի | 3750 | 750 | 1150 | 19000 | 10800 | 100 | 35 | 2500 | — | 150 |
| 14. Գորիս | 15050 | 2900 | 5050 | 57000 | 24200 | 1200 | 370 | 3700 | 20 | 2200 |
| 15. Ղուկասյան | 6370 | 1000 | 2330 | 12400 | 7200 | 850 | 260 | 2700 | — | 200 |
| 16. Դիլիջան | 4050 | 600 | 1500 | 14300 | 8000 | 1280 | 385 | 2400 | 30 | 1200 |
| 17. Դուզքենդ | 9950 | 1450 | 4280 | 22800 | 13700 | 480 | 140 | 3800 | — | 750 |
| 18. Զանգիբասար | 3650 | 750 | 650 | 8100 | 4400 | 100 | 35 | 3500 | 30 | 150 |
| 19. Իջևան | 7600 | 1150 | 2600 | 14200 | 7900 | 1720 | 560 | 2400 | — | 2200 |
| 20. Կալինինո | 9050 | 2240 | 2250 | 12200 | 6900 | 920 | 285 | 3000 | — | 850 |
| 21. Ղամարլու | 5800 | 1400 | 1300 | 17600 | 10000 | 580 | 180 | 4000 | — | 850 |
| 22. Ղարաբաղլար | 5580 | 1100 | 1950 | 17100 | 8600 | 220 | 80 | 3200 | — | 600 |
| 23. Ղափան | 14200 | 2700 | 4350 | 44300 | 22800 | 2300 | 780 | 6200 | — | 2550 |
| 24. Կիրովական | 9000 | 1450 | 3470 | 16200 | 9800 | 1000 | 350 | 2800 | 30 | 1900 |
| 25. Կոտայք | 8100 | 1200 | 3750 | 21500 | 12800 | 500 | 160 | 4000 | 150 | 1200 |
| 26. Կրասնոսելսկ | 7800 | 1050 | 3300 | 22000 | 11800 | 860 | 270 | 3000 | — | 800 |
| 27. Մարտունի | 9150 | 1350 | 4200 | 29000 | 16600 | 300 | 130 | 2200 | — | 1600 |
| 28. Մեղրի | 4300 | 850 | 1220 | 26600 | 14800 | 500 | 200 | 4500 | — | 600 |
| 29. Միկոյան | 7450 | 1200 | 3100 | 25000 | 14100 | 570 | 185 | 5000 | 65 | 3400 |
| 30. Նոյեմբերյան | 7300 | 1100 | 2550 | 13400 | 7400 | 3100 | 910 | 3000 | — | 1300 |
| 31. Նոր Բայազետ | 8700 | 1250 | 3760 | 30400 | 17200 | 530 | 175 | 2100 | 50 | 1650 |
| 32. Հոկտեմբերյան | 4660 | 1150 | 800 | 23900 | 12600 | 290 | 100 | 3600 | 50 | 150 |
| 33. Սևան | 5000 | 700 | 2150 | 9400 | 5300 | 450 | 150 | 2100 | 50 | 950 |
| 34. Սիսիան | 22400 | 4300 | 7600 | 57000 | 26600 | 600 | 280 | 3800 | — | 2400 |
| 35. Սպիտակ | 8640 | 1150 | 3500 | 20200 | 12800 | 700 | 240 | 5200 | — | 1000 |
| 36. Ստեփանավան | 11900 | 2630 | 3500 | 18000 | 11600 | 1800 | 500 | 4000 | — | 1050 |
| 37. Թալին | 9450 | 1750 | 3500 | 50000 | 27800 | 400 | 140 | 3300 | — | 950 |
| 38. Շամշադին | 10580 | 1550 | 4250 | 16600 | 8850 | 4000 | 1300 | 2500 | — | 1200 |
| 39. Երևան քաղաք | 50 | 30 | — | 200 | 150 | 20 | 5 | 100 | — | 50 |
| Ընդամենը | 305000 | 53000 | 110000 | 830000 | 452000 | 31000 | 10000 | 125000 | 850 | 50000 |

Հատիկային կուլտուրաների սերմացուի փոխանակումը Գոսսորտֆոնդի բազանե-րում սորտային սերմացուով՝ կոլխոզների սորտային սերմադաշտերում ցանելու համար: Բանջարա-բոստանային կուլտուրաների առանձնացված սերմացուն փոխագրել «Սորտսեմօվոշչի» բազաներից:

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ

# ՄԻ ՔԱՆԻ ԽՈՍՔ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Ընկերնե՛ր: Մենք լսեցինք վեց հռետորների ելույթները և, կարծում եմ, որ նրանք խոսում էին այնպես, ինչպես մոտավորապես կխոսեին պարտիական մնացած բոլոր կազմակերպությունների քարտուղարները, որոնք հավաքված են այստեղ:

Ո՞րն է մեր պարտիական սկզբնական կազմակերպությունների քարտուղարների բնորոշ գիծը: Այդ նրանց գործնականությունն է: Դուք նկատեցիք, որ բոլոր խոսող ընկերները հարցերը դնում էին գործնականորեն: Դա վատ գիծ չէ: Բոլշևիզմը երբեք անտես չի առնում գործնական կողմը: Գործունակությունը աշխատողի դրական հատկությունն է: Սակայն դրա հետ միասին ինձ թվում է, որ քարտու-



ղարների համար դեռ քիչ է կանգ առնել միայն գործնական կողմի վրա, նրանք պետք է անեն նաև որոշ ընդհանրացումներ: Պետք է սովորել ընդհանրացումներ կատարել:

Թվարկումը, արդյունքների հանրագումար կատարելը՝ թեև այդ աշխատանքն էլ հարկավոր է, այնուամենայնիվ, աշխատանքի միայն մասերից մեկն է: Կոմունիստները նրանով են աչքի ընկնում, որ գործնական հարցերի գումարը, գործնական խնդիրների գումարը նրանք ընդհանրացնում են, դրանք կապում-դարձնում են ամբողջություն: Եվ ահա, եթե նայենք ձեր պրակտիկային, փորձենք այն մի փոքր ընդհանրացնել, ապա ինձ թվում է, որ դուք պարտիական, հասարակական աշխատանքը բաժանում եք արտադրական աշխատանքից: Դուք, թվում է թե, կարծում եք, որ մարդը կարող է լինել հիանալի արտադրական աշխատող, նվիրված կոմունիստ, բայց քանի նա չի աշխատում խմբակում, քանի նա հանդես չի գալիս ժողովում, ագիտացիա չի մղում, ապա նա հասարակական աշխատանք չի կատարում:

Ահա այդպիսի մոտեցումը, որը հասարակական աշխատանքը բաժանում է ար-

տադրական, պետական աշխատանքից, ինձ անձամբ թվում է (ես ընդգծում եմ՝ անձամբ), որ այնքան էլ չի համապատասխանում բուն արտադրության խնդիրներին, մեր պետության բնույթին: Ասենք. այդպիսի մոտեցումը ավելի յուրահատուկ կլիներ հին ժամանակի կոմունիստներին: Ինչո՞ւ: Որովհետև մինչև ռևոլյուցիան արտադրական աշխատանքը կատարվում էր կապիտալիստների համար, իսկ մեր ագիտացիան ամբողջությամբ ուղղված էր կապիտալիստների դեմ, իսկ այժմ արտադրական աշխատանքը պետական և հասարակական կարևորագույն խնդիրներից մեկն է, դա ամենակարևոր խնդիրն է մեր ժամանակում:

Նկատի առեք, որ երբ ես հին ժամանակ աշխատում էի Պուտիլովի գործարանում, ես դրանով ամրացնում էի կապիտալիստներին, այն ժամանակ մենք իրավունք ունեինք արտադրական աշխատանքը կարկանապես բաժանել պարտականելից: Այն ժամանակ եթե ես գերակատարում էի արտադրական ցուցանիշները, ապա ընկերները օրինական հիմք ունենալով կարող էին ինձ ասել. «Է՛յ դու, վաստակում ես, երեկոյան էլ ես աշխատում, աջակցում ես



կապիտալիստներին, իսկ ժողովների չես գալիս, պարտիական աշխատանքը անուշադրության ես մատնել»: Եվ դա կլիներ բնական, բայց միայն հին ժամանակ: Իսկ այժմ: Պատկերացնենք այժմ մի մարդու, որն աշխատանք չի կատարում արտադրության մեջ, ամեն բան հետաձգում է վաղվան, իսկ խմբակ է հավաքում, և մյուս մարդկանց կտրում է աշխատանքից, քաշում-տանում պարապմունքների ու այդպիսով պարտիական աշխատանք կատարում: Իհարկե, ոչ ոք այդպիսի մարդու լավ կոմունիստ չի համարի: Եվ դա հասկանալի է, որովհետև մենք այժմ աշխատում ենք ոչ թե տիրոջ համար, այլ ինքներս ենք դարձել մեր սոցիալիստական պետության տերը: Եվ ինքը արտադրությունը դարձել է հասարակական արտադրություն, պետական արտադրություն:

Դրա համար էլ եթե ես քարտուղար լինեի, ապա ես մարդու պարտիական-հասարակական հիմնական աշխատանքը կհամարեի նրա արտադրական աշխատանքը: Եթե մարդու արտադրական արդյունքները անբավարար են, իսկ մնացած բոլոր ցուցանիշները լավ, ես կասեի, որ նա վատ կոմունիստ է:

Ձեր նամակներից ես զգում եմ, որ դուք գործնականում անց եք կացնում իմ միտքը, բայց վախենում եք այդ բանն ուղղակի ասելուց, չլինի թե ձեզ կշտամբեն այն բանի համար, թե դուք դարձել եք տնտեսավարներ: Նամակներից զգացվում է, որ դուք կուլտուրական մարդիկ եք, գիտակ, բայց, այնուամենայնիվ, ձեզանից ոչ ոք չասաց, որ նա մեր սոցիալիստական պայմաններում, այն էլ պատերազմի ժամանակ, արտադրական աշխատանքը համարում է պատրիոտական-հասարակական կարևորագույն աշխատանք, որն ամրապնդում է սովետական հասարակարգը:

Իսկ ինչո՞ւ հարցը չդնել խորապես սկզբունքայնորեն, պատրիոտականորեն, թե այն աշխատանքը, որն ամրապնդում է սովետական հասարակարգը, այն աշխատանքը, որը մեծագույն հարվածներ է հասցնում մեր թշնամիներին, այն աշխատանքը, որն ամբողջ աշխարհում հռչակում է սովետական երկրի, այլ կերպ ասած՝ սոցիալիստական հասարակակարգի անունը, մի՞թե այդպիսի աշխատանքը կոմունիստական աշխատանք չէ, պատրիոտական աշխատանք չէ: Մի՞թե մեր արտադրական նվաճումները, մեր կուլտուրական հաջողու-



թյունները կոմունիստական, պատրիոտական աշխատանք չեն: Չէ՞ որ կա պրոպագանդա՝ խոսքով և կա պրոպագանդա՝ գործով: Գործով կատարված պրոպագանդան ու ագիտացիան ավելի ուժեղ են: Այդ բանը մեզ մոտ գրեթե ամենուրեք ասում են, որ գործով կատարված պրոպագանդան ու ագիտացիան ամենազորեղ պրոպագանդան են: Այսպես, ահա, մեր արտադրական հաջողությունները էլ պրոպագանդա են՝ գործով:

Ես ձեզ կբերեմ այսպիսի օրինակ. հիմա ռազմաճակատում ի՞նչն է համարվում կարևորագույն պահանջը պարտիայի արժանավոր թեկնածուի համար (ձայն տեղից՝ հերոսությունը):

Հերոսությո՛ւնը, ճի՛շտ է: Մարտական լավ գործողություննե՛րը: Բայց չէ՞ որ դա արտաքնապես պատրիոտական աշխատանք չէ: Ահա, տեսնում եք, որ հերոսությունը, անձնվիրությունը՝ պայքարում, կարևորագույն տարր են հանդիսանում պարտիայի շարքեր մտնելու ժամանակ մարդու հատկությունները գնահատելու համար:

Այժմ եկեք անալոգիա անցկացնենք: Եթե դուք ընդունեցիք, որ մարտական լավ գործողությունները ռազմաճակատում հան-

ղեկավարում են պարտիզական մեծ գործ, կոմունիստական գործ, ապա դուք կհամաձայնվեք նաև այն բանի հետ, որ արկերը, թնդանոթները, գնդացիրները, որ մենք արտադրում ենք, նույնպես մեր հարազատ գործն է, անմիջական պայքարը մեր նպատակների համար: Արտադրական կողմը առաջին հիմքն է, ես կասեի, որ դա ժամանակակից պարտիզական աշխատանքի սրբություն սրբոցն է: Եվ ահա երբ դուք ագիտացիա, պրոպագանդա եք մղում, դաստիարակում եք մարդկանց, այս բանը պետք է միշտ հիշել:

Դուք ընկեր Ստալինի զեկուցումներից, Լենինի երկերից գիտեք, թե որքան կարևոր է զարգացման յուրաքանչյուր էտապում կարողանալ բռնել հիմնական օղակը: Եվ ագիտացիայի մեջ, պրոպագանդայում, և՛ պարտիզանության դաստիարակչական գործում պետք է բռնել այդ հիմնական օղակը: Այժմ ի՞նչ հիմնական վճռական խնդիր է կանգնած սովետական ամբողջ ժողովրդի առաջ: — Պայքարը գերմանական օկուպանտների դեմ: Դրա համար էլ ո՛րտեղ էլ որ դուք ագիտացիա մղեք, ինչ աշխատանք էլ որ դուք կատարեք, ինչպիսի մարդու հետ էլ որ դուք խոսեք, մեր



ագիտացիան ու պրոպագանդան ներկայումս միշտ պետք է համընկնեն հիմնականին — որպեսզի բոլորն էլ իրենց ամբողջ ուժով օգնեն այդ գլխավոր համաժողովրդական խնդրի իրականացմանը՝ գերմանական զավթիչների ջախջախմանը:

Եթե դուք ձեր ագիտացիոն աշխատանքի համար պատրաստվում եք պարտիզական կաբինետում և այնտեղ ստանում կոմունիստական իմաստություն, ապա դուք պետք է ընտրեք այն նյութը, որոնք այն պատմական անալոգիաները, որոնք ձեզ հարստացնեն, ձեզ հնարավորություն տային մասսաներին ավելի լավ հասկացնելու մեր երկրի ներկա դրությունը և յուրաքանչյուրի խնդիրը՝ ֆաշիզմի դեմ մղվող պայքարում: Չէ՞ որ մեր կյանքը այժմ այնպես հարուստ է հիանալի փաստերով, որ յուրաքանչյուր ագիտատոր, ամենափոքրից մինչև ամենամեծը, կարող է այնտեղ ընթացիկ իրադարձություններին անմիջականորեն վերաբերող անսահման քանակությամբ վառ ու կենդանի նյութ գտնել:

Վերցրեք թեկուզ թերթի երեկվա համարը: Այնտեղ զետեղված է մեր կառավարության հայտարարությունը, որը ՏԱՍՍ-ի

միջոցով տրվել է լեհական հարցի առթիվ: Չէ՞ որ դա շատ հարուստ նյութ է: Ըստ որում այդ հաղորդագրությունը այնպես վառ կերպով է կազմված, այնպես հասկանալի շարադրված յուրաքանչյուրի համար: Այդ հաղորդագրության վրա կարելի է հոյակապ զրույց կառուցել: Ունկնդիրների ուշադրությունը հրավիրեցեք այն բանի վրա, որն արդեն բազմիցս շեշտվել է, թե մենք մղում ենք արդարացի պատերազմ: Պատերազմի հենց սկզբում իր առաջին ճառում ընկեր Ստալինը ընդգծեց, որ մենք մղում ենք պաշտպանական, արդարացի պատերազմ: Այժմ մեր բանակը գտնվում է ավելի լավ դրության մեջ, քան երբևիցե այս պատերազմում, իսկ գերմանացիները վերջին հինգ տարում երբեք ավելի վատ դրության մեջ չեն եղել, քան այժմ: Եվ ահա այդ ժամանակ նայեցեք թե մեր կառավարությունն ինչպես է ընդառաջ գնում Լեհաստանին, լեհ ժողովրդին: Դուք կարող եք այդ առթիվ, իհարկե, վերհիշել ռուս-լեհական հարաբերությունների պատմությունը, ընտրել և բերել համապատասխան պատմական փաստական նյութ, որ դուք կարող եք ստանալ միևնույն պարապմունքում:



Նման մեթոդի դեպքում մարդիկ կսովորեն մարքսիստորեն մոտենալ միջազգային հարցերի ըմբռնմանը, կսկսեն ստեղծագործաբար փորձ կուտակել իրենց պարտիական ամենօրյա աշխատանքի համար:

Ի՞նչ է նշանակում պարտիական աշխատանք: Իհարկե, կազմակերպորեն մենք բաժանում ենք աշխատանքի բնագավառները և դրանք անվանում՝ պարտիական, պրոֆմիութենական, տնտեսական և այլն: Աշխատանքի այդ ճյուղերից յուրաքանչյուրն ունի իր առանձնահատկությունները:

Պարտիական աշխատանքն ինչ առանձնահատուկ կողմերով է տարբերվում մնացած բոլորից: Ինձ խիստ նեղ է թվում այն ըմբռնումը, թե նրա առանձնահատկությունն այն է, որ պարտիական աշխատանքը ծառայում է միայն ագիտացիային, պրոպագանդային, կոմունիստական դաստիարակությանը բառիս նեղ իմաստով: Պարտիական աշխատանքը այն է, եթե կարելի է այսպես արտահայտվել, որ նա յուրաքանչյուր աշխատանքի մեջ, նույնիսկ ամենատեխնիկական և մեխանիկական աշխատանքի մեջ մտցնում է պարտիական ըմբռնման ոգի, պարտիական մոտեցում:

Օրինակ, խառատը կատարում է մեխանիկական հասարակ աշխատանք: Բայց մեզ համար ամենևին էլ միևնույն չէ, թե նա այդ աշխատանքը կատարո՞ւմ է արդյոք ճիշտ այնպես, ինչպես կկատարեր աշխատելով մասնավոր ձեռնարկության մեջ, որոշակի վճարի համար, դրա հետ չկապելով այդ աշխատանքի ամբողջ կարևորության հասարակական ըմբռնումը, կամ թե մեր խառատը, պատրաստելով այս կամ այն դետալը, տոգորված լիներ այն մտքով, որ նա դրա հետ միասին կատարում է նաև պետական մեծ գործ, աշխատում է երկրի պաշտպանության համար, որ նրա արտադրանքը գնում է ռազմաճակատ, որտեղ այն օգտագործում են թշնամու դեմ պայքարելու համար, և թե որքան ավելի լավ արտադրանք տա նա, այնքան ավելի էֆեկտիվորեն կմասնակցի գերմանացիների դեմ մղվող պայքարին: Ուրեմն, նա իրեն դիտում է ո՛չ թե մեկուսացված քաղաքական ընդհանուր խնդիրներից, այլ որպես ընդհանուր պայքարի, պետական ընդհանուր միջոցառումների բաղկացուցիչ օղակ:

Եվ այս կապակցությամբ ես ուզում եմ ձեզ հայտնել նաև ես մեկ միտք: Մեզ մոտ հաճախ այս կամ այն կոմունիստի մասին



ասում են, որ նա խորապես պարտիական մարդ է: Սակայն դուք մտաբերեցեք, մի՞թե այդ տերմինը գործածվում է միայն ագիտատորների ու պրոպագանդիստների նկատմամբ: Խորապես պարտիական մարդ լինելու համար պարտադիր չէ լինել միայն ագիտատոր կամ պրոպագանդիստ, այլ պետք է ինչ-որ այլ բան. այսինքն պարտիական վարքագիծ՝ քաղաքական, հասարակական և նույնիսկ անձնական կյանքում: Վերցնենք նորից միևնույն խառատին: Եթե նա իր աշխատանքը կապում է ամբողջի հետ, եթե նա այդ աշխատանքի մեջ ներդնում է իր ամբողջ եռանդը, ուժը, հմտությունը, հասկանալով, որ դրանով նա պաշտպանում է նաև սովետական երկիրը, և դրա համար էլ նա հաշվի չի առնում ո՛չ ժամանակը, ո՛չ դժվարությունները, ո՛չ էլ արտադրության հետ կապված անհարմարությունները, ապա նա իր աշխատանքին մոտենում է պարտիականորեն և, ես կասեի, որ այդ ընկերը խորապես պարտիական մարդ է և նրա արտադրական աշխատանքը միաժամանակ հանդիսանում է նաև պարտիական աշխատանք, որքան որ նա այդ աշխատանքը կապում է ամբողջի հետ:

Ես ձեզ օրինակ կբերեմ անցյալից: Պարտիայի շարքերը այն ժամանակ որոշ մարդիկ էին մտնում, որոնք, երբ նրանց վիճակվում էր տեխնիկական հասարակ աշխատանք, ասենք, թռուցիկներ ցրել կամ գաղտնի բնակարանի պահպանում, կամ թե որևէ այլ տեխնիկական աշխատանք, ապա նրանք, որոնք հետո արագորեն հեռանում էին պարտիայից, չէին բավարարվում այդպիսի աշխատանքով. Նրանք ուզում էին դառնալ ագիտատորներ, պրոպագանդիստներ, այսինքն նրանք ձգտում էին քաղաքական փայլի, մինչդեռ հարկ էր լինում կատարել շատ աննկատելի, առօրյա աշխատանք: Բայց չէ՞ որ այդպիսի գործերն այն ժամանակ ամենաանհրաժեշտ աշխատանքն էին պարտիայի համար:

Եվ, վերջապես, թող ընկերները պարտիայի պատմությունից վերհիշեն, որ ընկեր Ստալինը Բաքվում կազմակերպել էր ընդհատակյա տպարան: Ի՞նչ եք կարծում, ընկեր Ստալինը այդ գործը կազմակերպում էր ագիտացիայո՞վ, պրոպագանդայո՞վ, կոչեր գրելո՞վ: Ո՛չ: Ինքնակալական ռեժիմի և ոստիկանական հսկողության պայմաններում դա հսկայական կազմակերպչական, բայց միևնույն

ժամանակ նաև տեխնիկական ու ամենաառօրյա աշխատանք էր, որովհետև հարկավոր էր լուծել բազմաթիվ հատկապես տեխնիկական գործեր,—շենք գտնել տպարանի համար, տառեր ճարել, կազմակերպել պատրաստի նյութի փոխադրումը և այլն: Ասացեք, խնդրեմ, դա պարտիական աշխատա՞նք է, թե ոչ: Այսպիսով, դուք տեսնում եք, որ պարտիականությունը կամ պարտիական աշխատանքը կապված չեն աշխատանքի տեսակների հետ, այլ այն բանի հետ, թե ինչի է ծառայում այն: Եթե այդ աշխատանքը չի օգնում բանվոր դասակարգի գործին, ապա դա անօգտակար է և ոչ-պարտիական:

Իսկ այժմ ասացեք. մեր Սովետական երկրում ո՞ր արտադրական աշխատանքը, և առանձնապես ձեռնարկություններում, կոլխոզներում, հիմնարկություններում կատարվող ո՞ր աշխատանքն է, որ չի ամրապնդում սովետական հասարակակարգը: Ինչպես տեսնում եք, քաղաքական աշխատանքում պարտիականությունը որոշվում է աշխատանքի ոչ թե կազմակերպական բաշխմամբ (որը կազմակերպորեն միանգամայն ճիշտ է), այլ ամեն մի հասարակական, արտադրական, պաշտոնական

աշխատանքում պարտիականություն մըտցընելով:

Իհարկե, սրանով ես չեմ ուզում նսեմացնել մարքսիզմ-լենինիզմի ուսումնասիրության անհրաժեշտությունը, որն ըստ էության, հնարավորություն է տալիս պըրակտիկ կյանքում պարտիական մոտեցում ունենալու, պարտիականորեն մոտենալու յուրաքանչյուր գործի:

Այստեղ հանդես եկած ընկերներից մեկը հայտարարեց, որ նա դժվարին դրության մեջ է գտնվում իր գործարանի բոլոր կոմունիստների համար պարտիական-հասարակական աշխատանք որոնելու գործում, որովհետև պարտիական կազմակերպությունը բազմամարդ է: Ես դա թյուրիմացություն եմ համարում:

Այստեղ պատմեցին, որ պարտիայի շարքերն ընդունված գյուտարար ինժեները գնացել է պարտբյուրո հասարակական աշխատանք խնդրելու և նրան տվել են պրոպագանդիստական խմբակ: Գալիս է մի ուրիշը, նույնպես որակյալ ինժեներ, բայց նրա համար արդեն խմբակ չկար և պարտկազմակերպությունը չգիտեր, թե ինչ հասարակական աշխատանք հնարեր նրա համար:



Ես այլ կերպ կվարվեի ու նրան կասեի. «Կազմակերպի՛ր գյուտարարական խմբակ, եղի՛ր նրա ղեկավարը: Թերևս դուք այնտեղ ոչինչ էլ չեք հայտնագործի, բայց, գուցե, որևէ բան անեք»: Թերևս ձեզանից ոմանք դա չեն համարի պարտիական աշխատանք, իսկ ես դա կհամարեի իսկական պարտիական աշխատանք: Չէ՞ որ, եթե նա իսկական գյուտարար է, ապա նա տարված է մեկ մտքով, նրա ամբողջ մտածողությունը, միտքը ուղղված է մեկ կողմ: Ի՞նչ կարիք կա նրան շեղելու դրանից: Նրան տվեք առավել հարմար աշխատանք՝ թող նա կազմակերպի խմբակ, որտեղ զբաղվեն գյուտարարությամբ և ես դա կհամարեի պարտիական աշխատանք: Մի ուրիշ ինժեներ, եթե նա լավ ագիտատոր է, թող կատարի ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանք, իսկ եթե նա այդ աշխատանքի հակումն չունի, ապա նրա համար պետք է ընտրել այնպիսի գործ, որտեղ նա ավելի օգտակար կլինի:

Դրա համար էլ չպետք է անհանգստանալ, թե աշխատանք չկա, այլ պետք է հնարավորություն տալ նախաձեռնություն հանդես բերելու, մի քիչ խոր կշռադատելու և, դուք ինքներդ կտեսնեք, որ մարդիկ

քիչ են ամբողջ աշխատանքը կատարելու համար:

Այստեղ խոսում էին կոմունիստների դաստիարակության մասին: Ինչպե՞ս պարտիականություն դաստիարակել պարտիայի շարքերում նոր ընդունված մարդու մեջ: Այդ բանը կախված է ձեզանից, ձեր տված ուղղությունից:

Այստեղ մի ընկեր պատմեց, թե ինչպես երիտասարդ կոմունիստներին կշտամբում են այն բանի համար, որ նրանք կանոնավոր չեն մուծում պարտիական անդամավճարը: Դա, կարծես թե, խորապես պըրակտիկ հարց է: Իհարկե, կարելի է պարզապես նախատել մարդկանց, նրանց ցույց տալ, որ նրանք անկարգապահ, վատ կոմունիստներ են, և այլն: Սակայն այդ նույն հարցը կարելի է դնել նաև սկըզբունքայնորեն: Մարդկանց ասել. «Դուք ինքներդ հասկանում եք, որ եթե մեկ-երկու ամսով հետաձգենք անդամավճարների մուծումը, պարտիայի համար դա էական նշանակություն չի ունենա, դրանից նրա դրամարկղը չի տուժի: Մեր պարտիան այժմ աղքատ պարտիա չէ»: Եվ նրա համար չէ, որ մենք այս առթիվ խոսում ենք ձեզ հետ, որ ձեր կողմից անդամավճարը



ուշացնելու պատճառով մենք չենք կարողացել ժամանակին ուղարկել մեր պարտիական հաշվետվությունը, բանն այդ չէ, այլ այն, որ եթե դուք պարտիական անդամավճարը ժամանակին չմուծեք, ապա այդ նշանակում է, որ դուք չեք մտածում պարտիայի մասին, որ դուք պարտիական պարտականություններին անփույթ եք վերաբերվում: Իսկ նա, ով պարտիական պարտականություններին, այն էլ այդպիսի հասարակ, խիստ կազմակերպչական պարտականություններին, ինչպես պարտիական անդամավճարների մուծումն է, վերաբերվում է այսպես, ապա նշանակում է, որ նա խորապես տոգորված չէ պարտիայով: Չէ՞ որ նա, ով մտածում է պարտիայի մասին, նրա համար պարտիական անդամավճարի մուծումը բավականություն է, որովհետև նա դրանով կարծես թե նյութական կապ է հաստատում պարտիայի հետ, կարծես թե շփվում է նրա հետ:

Տեսնո՞ւմ եք, ընկերներ, թե՛ ես և թե՛ դուք միանման ենք մտածում այդ հարցին, միանման ենք մտածում, բայց ես ուզում եմ ձեզ ցույց տալ, թե ինչպես կարելի է քաղաքական բնույթ տալ հասա-

րակ գործողությանը։ Եթե այսպես մոտենանք գործին, ապա պարտիական անդամավճարներ մուծելու պարզ հարցը վերածվում է քաղաքականության։

Այսպիսի մոտեցման դեպքում ժողովում անմիջապես հռետորներ կգտնվեն, որոնք կսկսեն ամեն տեսակ օրինակներ բերել ձեզ, թերևս նույնիսկ կսկսեն ապացուցել, որ արդեն այնքան էլ կարևոր չէ դա, որ կարելի է պարտիայի համար մեռնել, իսկ անդամավճարներ մուծելը մոռանալ և այլն։ Եվ ահա ձեզ մոտ կսկսվի սկզբունքային քննարկում։

Տեսնո՞ւմ եք, երբ միևնույն հարցին տալիս ենք խիստ գործնական գիծ, խոսում ենք միայն փաստերի լեզվով, ապա դա նվազ հասկանալի է դառնում, իսկ երբ տալիս ենք ընդհանրացում, քաղաքական գնահատական, ապա դա դաստիարակում է։

Ես նկատում եմ, որ դուք երիտասարդ կոմունիստների հետ կատարվող պարտիական աշխատանքը, կոմունիստների դաստիարակությունը կապում եք միայն ուսման հետ։ Ուսմամբ զբաղվելը, իհարկե, վատ չէ։ Ես դեմ չեմ ուսմանը։ Սովորեցնել պե՛տք է։ Սակայն դաստիարակու-



թյունը և ուսուցումը միևնույնը չեն բառի խիստ իմաստով։

Կարելի է հասնել այն բանին, որ մարդը սովորի թե՛ պարտիայի ծրագիրը, գիտենա և՛ կանոնադրությունը, և՛ ձևականությունները կատարելը, բայց, այնուամենայնիվ, նա կոմունիստ չէ։ Նա փայտ է և ոչ թե կոմունիստ։ Լսե՞լ եք՝ երբեմն ոմանց մասին ասում են, որ նա փայտե մարդ է (ձայն՝ դուբինա)։ Ո՛չ, դա մի փոքր այլ բան է։ Դուբինան հայհոյանք է, իսկ փայտը, դա արդեն խիստ ուղղամիտ, ճկուն մտածողություն չունեցող, առանց էմոցիաների մարդ է, որը չի հասկանում և չի զգում յումորը, իրոնիան։ Այդպիսի մարդու մասին ասում են՝ դա խակական փայտ է։

Դաստիարակելը շատ ավելի դժվար է, քան թե սովորեցնելը, կրթություն տալը։ Չէ՞ որ դաստիարակը դաստիարակվողների վրա ազդում է ո՛չ միայն նրանով, որ նրանց տալիս է որոշ գիտելիքներ, այլև գլխավորապես առօրյա երևույթներին իր ունեցած վերաբերմունքով։

Այստեղ ընկեր Բողրովան պատմեց մի բանվորուհու ծանր կյանքի մասին, որին նրանք օգնել են և դրանով անմիջապես

բարձրացրել նրա տրամադրությունը: Ես պետք է ասեմ, որ դա ոչ միայն պարտիզանական լավ փաստ է ինքնին վերցրած: Այստեղ արժեքավոր է ո՛չ միայն այն, որ օգնել են դժվարին հանգամանքներից ընկճըված մարդուն: Այլև հենց դա է կոմունիստների դաստիարակումը, կոնկրետ դաստիարակությունը: Այդպիսի օրինակներով էլ դուք պետք է կառուցեք ձեր դաստիարակությունը կոմունիստներին:

Վատ արարքի վրա էլ կարելի է կառուցել դաստիարակությունը՝ այն սկզբունքային դիրքերից քննարկելու միջոցով: Ենթադրենք, որ մարդը վատ է աշխատում: Այն ժամանակ պետք է ցույց տալ, որ այդ վատ աշխատանքը անդրադառնում է բոլորի վրա: Ահա այսպիսի կոնկրետ փաստերի, կենսական հարցերի վրա, ինչպես ընդհանուր քաղաքական հարցերի վրա է կառուցվում մարդկանց դաստիարակությունը:

Բերեմ մի օրինակ: Ենթադրենք ես պարտիզանական կազմակերպության քարտուղար եմ: Իմ մոտ գալիս են շատ մարդիկ և նրանց մեջ լինում են այնպիսիները, որոնք զբաղվում են փսփսալով, թե ոմանք վատ են աշխատում, ոմանք վատ են վարվում:



Իսկ իրենք էլ այդպիսի մեղքեր ունեն: Չէ՞ որ կան այդպիսի մարդիկ: Ահա վերցնել այդպիսի մարդու և մերկացնել՝ դա կլինի դաստիարակչական աշխատանք:

Պետք է ուղղակի ասել, որ դաստիարակչական աշխատանքը ամենադժվարին աշխատանքներից մեկն է, որովհետև այն կապված է նաև մեր անձնական վարքագծի հետ: Եթե դու, օրինակ, խոսես օղու դեմ, իսկ ինքդ խմես, ապա դա օգուտ չի տա: Եթե դու կարգապահության կոչ ես անում, իսկ ինքդ շարունակ խախտում ես այն, պարզ է, որ այդպիսի կոչը նվազ գործունակ կլինի:

Դաստիարակությունը մանկավարժական ամենադժվարին աշխատանքներից մեկն է: Իսկ մարդկանց քաղաքական գրագիտություն սովորեցնելը, պարտիայի ծրագիրը, կանոնադրությունը սովորեցնելը այլ բան է, որովհետև դրանով հաղորդվում են որոշ գիտելիքներ: Իհարկե, այստեղ չի կարելի կտրուկ գիծ անցկացնել ուսումնական և դաստիարակչական աշխատանքի մեջ, որովհետև ուսմամբ էլ է մարդ դաստիարակվում: Սակայն գլխավորը, այս բանը մի՛ մոռանաք, այն է, որ պարտիայի անդամների հետ կատարվող դաստիարակչա-

կան աշխատանքը պետք է կատարվի ամեն օր, անընդհատ կերպով, հաճախ այն կառուցվում է մանրուքների վրա, իսկ երբեմն էլ լուրջ, խոշոր գործերի ու հարցերի վրա:

Ահա այստեղ խոսում էին, որ թերթերի ընթերցումներ են կատարվում: Եթե թերթերը միայն կարդացվում են և այդ առթիվ քննարկություն չի լինում՝ դա անբավարար է: Այստեղ կարող է այնպիսի դրություն լինել, որ մեկն արդեն թերթը կարդացած լինի և նա ձեզ չի լսի, իսկ մյուսը թեև չի էլ կարդացել, բայց սոսկ ընթերցումը նրան քիչ բան է տալիս: Իսկ եթե դուք սկսեք վերլուծել և ընդհանրացնել կարդացածը, այն ժամանակ, բնականաբար, ամենքի համար էլ հետաքրքիր կլինի: Վիճեցե՛ք: Ինչո՞ւ չի կարելի վիճել: Իսկ դուք խիստ գործնականներ եք: Վախենում եք, որ չլինի թե սխալ թույլ տաք: Ի՞նչ կլինի, որ եթե սխալվեք էլ: Մեզ մոտ պատժում են ոչ թե սխալների համար. սխալների համար ձեզ կշտամբում են, թերևս այդ մասին թերթում գրեն և ուրիշ ոչինչ: Պատժում են նրանց, ովքեր պաշտպանում են իրենց սխալները, ովքեր համառում են իրենց սխալների մեջ, հե-



ռանում են պարտիայի գծից: Եթե մարդը մերն է, նվիրված Սովետական իշխանությանը, իր պարտիային, և եթե նա որևէ ոչ-այնքան ճշգրիտ ձևակերպում է տվել իր մեկնաբանման մեջ, ապա նրան, իհարկե, մատնացույց կանեն այդ և ուրիշ ոչինչ:

Դուք կարծում եք, որ պարտիականությունը կարելի է արմատավորել միայն պարտիայի կանոնադրությամբ ու ծրագրո՞վ: Իհարկե, ինչպես կարելի է պարտիայի մեջ մտնողին չծանոթացնել կանոնադրության հետ: Կանոնադրությունը տալիս է կոմունիստի վարքագծի կանոնները, օրինակելի վարքագծի կանոնները: Բայց եթե կոմունիստների հետ անցկացվող զրույցները միայն դրանով սահմանափակվեին, ձանձրալի կլիներ: Այստեղ չի կարելի ձևականորեն մոտենալ:

Պետք է կարողանալ ուսման մեջ էլ տարբեր ձևով մոտենալ տարբեր մարդկանց: Ենթադրենք, որ մարդը 60 տարեկան է, իսկ դուք նրանից պահանջում եք լրիվ իմանալ պարտիայի կանոնադրությունն ու ծրագիրը: Նա լավ արտադրական աշխատող է, ազնիվ բանվոր, Սովետական իշխանության նվիրված մարդ և ոչ վատ

կոմունիստ: Պարզ է, որ պարտիայի այդպիսի անդամի նկատմամբ այդ հարցում կարելի է ավելի պիճողաբար վարվել:

Ահա մենք կազմակերպում ենք խմբակներ, ուսումնասիրում ենք մարքսիզմը, իսկ ռուսաց պատմությունը շատ քիչ ենք ուսումնասիրում. դա կարծես ոչ-պարտիական գործ է համարվում: Սխալ է, բացարձակապես սխալ: Ռուսաց պատմության ուսումնասիրումը հետաքրքիր է, դրավիչ, իսկ եթե ռուսաց պատմությունը դասավանդի մարքսիստ, և անցյալի յուրաքանչյուր պատմական երևույթ քննարկվի մարքսիստական տեսանկյունով, ապա մարդիկ հետաքրքրությամբ կգնան խմբակ և շատ բան կսովորեն: Դա կլինի պարտիական աշխատանք:

Ավելի որակյալ մարդիկ կարող էին ընդգրկվել փիլիսոփայության պատմության ուսումնասիրմամբ: Ընդհանրապես ասած, այս կամ այն առարկայի սիրողների յուրաքանչյուր խումբը, ասենք գեղարվեստական գրականության, համաշխարհային պատմության որոշ շրջանի սիրողների յուրաքանչյուր խումբ կամ թե որևէ հասարակական կամ նույնիսկ տեխնիկական պրոբլեմի մշակմամբ հետաքրքրվող մարդիկ



կարող են ստեղծել խմբակներ, որտեղ և ուսումնասիրեն իրենց հետաքրքրող առարկան: Իսկ այդ խմբակների պարտիականությունը կլինի ուսումնասիրվող հարցերին մոտենալու մեջ մարքսիստական-լենինյան մեթոդի կիրառումը: Այնտեղ մարդիկ կարող են փիլիսոփայել:

Էլ ի՞նչ իսկական կոմունիստ է, եթե նա մի քիչ չի փիլիսոփայում: Մենք շատ հեռուներն ենք նայում, տեսնում հեռավոր հեռանկարը: Եվ ինձ թվում է, որ դուք բոլորդ խիստ պրակտիկներ եք դարձել, շարունակ ձեր քթի տակն եք նայում, չլինի թե հանկարծ սայթաքեք:

Մարքսիզմը ոչ միայն հասարակական, այլև բնական երևույթները հասկանալու միակ հավատարիմ մեթոդն է: Դրա համար էլ տիեզերքի երևույթների ըմբռնմանը ձգտող ամեն մի աշխատանք, եթե այն կատարվի մարքսիզմ-լենինիզմի տեսանկյունով, ամրապնդում է մեր բոլշևիկյան պարտիականությունը: Այդ աշխատանքը անսահման է, անվերջ: Հարկավոր է միայն, որ մարդիկ ավելի լայն նայեն աշխարհի վրա, որ կարողանան իմաստավորել և ընդհանրացնել իրենց պրակտիկան:

(«Спутник Агитатора», № 2, 1944 г.)

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՄԱՐՏԻԿՆԵՐԻ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ՀԵՐՈՍՈՒԹՅՈՒՆԸ

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ ՊԱՐԳԵՎԱՏՐՎԱԾՆԵՐԻ ԹԻՎԸ

Հայրենական պատերազմի ընթացքում Սովետական Միության հերոսի կոչում են ստացել Կարմիր Բանակի 3617 մարտիկներ, որոնցից 11-ը Սովետական Միության կրկնակի հերոսներ են: Դնեպրը չրջանցելու համար Սովետական Միության հերոսի կոչում են ստացել 1872 հոգի:

Հայրենական պատերազմի ընթացքում Սովետական Միության շքանշաններով և մեդալներով պարգևատրվել է ավելի քան 1,5 միլիոն մարդ: Պարգևատրումների ընդհանուր թիվը գերազանցում է պարգևատրվածների քանակին, որովհետև Կարմիր Բանակի մարտիկներից շատերը պարգևատրվել են մի քանի անգամ:

Հայրենական պատերազմի սկզբից մինչև 1944 թվի հունվարի 1-ը եղել է 2.145.428



պարգևատրում, այդ թվում՝ Լենինի շքանշանով— 4641 հոգի, Կարմիր դրոշի շքանշանով 86.171, Սուվորովի շքանշանով (առաջին աստիճանի) 64, երկրորդ աստիճանի՝ 430, երրորդ աստիճանի՝ 827, Կուտուզովի շքանշանով— առաջին աստիճանի 94, երկրորդ աստիճանի 338, երրորդ աստիճանի 255, Բոգդան Խմելնիցկու շքանշանով— առաջին աստիճանի 2, երկրորդ աստիճանի 4, երրորդ աստիճանի 365, Ալեքսանդր Նևսկու շքանշանով— 4500, Հայրենական պատերազմի շքանշանով— առաջին աստիճանի 35.667, երկրորդ աստիճանի 84.362, Կարմիր աստղի շքանշանով 439.918, «Փառք» շքանշանով— երկրորդ աստիճանի 5, երրորդ աստիճանի 749, «Խիզախության համար» մեդալով 793.934, «Մարտական ծառայությունների համար» մեդալով 686.686:

## ՍՍՌՄ ԲՈԼՈՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐՆ ԷԼ ՈՒՆԵՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍՆԵՐ

Իրենց Սովետական Հայրենիքի համար մղվող մարտերում մեր անծայրածիր հայրենիքի բոլոր ազգությունների մարտիկները ցուցաբերում են մասսայական հերո-

ռություն: Առ 1-ը հունվարի 1944 թ. տվյալներով պարգևատրվածների մեջ հաշվվում են.

| | |
|---|---|
| Ռուսներ | 1053162 հոգի |
| Ուկրաինացիներ | 219241 » |
| Բելոռուսներ | 37,036 » |
| Վրացիներ | 8,562 » |
| Հայեր | 9614 » |
| Ադրբեջանցիներ | 4644 » |
| Ուզբեկներ | 9812 » |
| Ղազախներ | 1557 » |
| Կիրգիզներ | 1554 » |
| Տաջիկներ | 1198 » |
| Թուրքմեններ | 1170 » |
| Լիտվացիներ | 1069 » |
| Լատիշներ | 1678 » |
| Էստոնացիներ | 1353 » |
| Հրեաներ | 32067 » |
| Թաթարներ | 27449 » |
| Բաշկիրներ | 4750 » |
| Ուդմուրտացիներ | 2996 » |
| Մարիականներ | 2678 » |
| Օսետիններ | 2527 » |
| Կ ո մ ի ն ե ր | 2182 » |
| Բուրյաթներ | 1058 » |
| Կաբարդացիներ | 587 » |
| Լեզգիներ | 508 » |



| | |
|---|---|
| Չերկեսներ | 316 » |
| Խակասներ | 313 » |
| Չեչեններ | 297 » |
| Ավարցիներ | 234 » |
| Ադիղեյցիներ | 278 » |
| Յակուտներ | 258 » |
| Արխազներ | 250 » |
| Կարաչաեվականներ | 218 » |
| Ալտայցիներ | 131 » |
| Լակեր | 112 » |
| Նանայցիներ | 89 » |
| Դարգիններ | 89 » |
| Չեխեր | 52 » |
| Սաորիներ | 37 » |
| Մոնղոլներ | 31 » |
| Օստյակներ | 29 » |
| Քրդեր | 27 » |

Պարգևատրվածների մեջ կան նաև աջարացիներ, օյրոտներ, նենեցներ, էվենկներ, նաղայբակներ, վոգուլներ, մանսիներ և շատ մարտիկներ ՍՍՌՄ-ի այլ ազգություններից:

## ՄԵՐ ՈՂՋ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ ԱՋԱԿՑՈՒՄ Է ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻՆ

«Ոչ մի տեղ աշխարհում չկա այնպիսի սիրելի և հոգատար վերաբերմունք ժողո-

վըրդի կողմից դեպի բանակը, ինչպես մեզ մոտ» (ՍՏԱԼԻՆ):

Բանակի նկատմամբ սովետական հայրենասիրության և սիրո անքակտելի արտահայտություն է հանդիսանում մեր ժողովրդի մասնակցությունը իր անձնական միջոցներով պետության ռազմական ծախքերի մեջ: Հայրենական պատերազմի ընթացքում սովետական կառավարությունը բաց է թողել պետական ռազմական երկու փոխառություն: 1942 թվին ռազմական փոխառությունը, որը բաց էր թողնված 10 միլիարդ ռուբլով, իրացվեց 13,2 միլիարդ ռուբլով: 1943 թ. ռազմական փոխառությունը, որը բաց էր թողնված 12 միլիարդ ռուբլով, իրացվեց 20,8 միլիարդ ռուբլով:

Լենինգրադի բանվոր Դոբրիցովը հայտարարեց.— «Թող մեր ռուբլիները դառնան գնդակներ ու սուրան դեպի թշնամին, թող մեր պարտատոմսերը դառնան արկեր ու կործանեն թշնամու ամրությունները»:

Աշխատավորների նախաձեռնությամբ 1941-1943 թվականների ընթացքում Կարմիր Բանակի ֆոնդին հավաքվել է մոտավորապես 13 միլիարդ ռուբլի: Բացի այդ, ֆոնդերի օգտին ստացվել են բազմաթիվ



թանկարժեք իրեր և մեծ քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ: Դրամաիրային վիճակախաղերի գծով հավաքվել է 6,9 միլիարդ ռուբլի:

---

Սովետական մարդկանց համար սովորական է դարձել տոնական օրերին իր պաշտպաններին նվերներով ուրախացնելը: Կարմիր Բանակի 25-րդ տարեդարձին ռազմաճակատ է ուղարկվել 1318 վագոն նվերներ, իսկ Հոկտեմբերյան սոցիալիստական ռեվոլուցիայի 25-րդ տարեդարձին 1689 վագոն:

Ընդամենը 1942 և 1943 թվերի՝ երկու տարիների ընթացքում, ոչ լրիվ տվյալներով, գործող Կարմիր Բանակն ստացել է 7673 վագոն, տարբեր նվերներով, բացի այդ, միայն 1942 թվին մարտիկներին և հրամանատարներին ուղարկվել են 204,1068 անհատական նվեր-ծանրոցներ: Շատ սննդամթերքներ և զանազան նվերներ են ստանում հոսպիտալներում բուժման մեջ գտնվող մարտիկներն ու սպաները:

---

«Կարմիր Բանակի հավատարիմ օգնականներ են հանդիսանում մեր պանծալի պարտիզաններն ու պարտիզանուհիները: Նը-

բանք մեծ գործ են կատարում, անխնա կերպով ոչնչացնելով թշնամուն» (Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ):

Հայրենական պատերազմի ընթացքում պարտիզանական ջոկատները ոչնչացրել են հարյուր հազարավոր հիտլերյան սրիկաներ, ոչնչացրել են բազմահազար գերմանական տանկեր, զրահապատ մեքենաներ, ինքնաթիռներ, զենքեր, հազարավոր ավտոմեքենաներ:

«Ի պատասխան իր ժողովրդի վստահության և հոգատարության, Կարմիր Բանակը պետք է ավելի ամուր հարվածի թշնամուն, անխնա կերպով ոչնչացնի գերմանական զավթիչներին, անդադար քշի նրանց սովետական հողից» (ՍՏԱԼԻՆ).

## ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԲԱՆԱԿՆ Է

«Սովետական Միության բոլոր ժողովուրդները միաձույլ կերպով ոտքի են ելել պաշտպանելու իրենց Հայրենիքը, իրավացի կերպով այժմյան պատերազմը համարելով ամբողջ աշխատավորության ընդհանուր գործը, անկախ ազգությունների



և դավանանքի տարբերություններից» (ՍՏԱԼԻՆ):

---

Կարմիր Բանակի շարքերում թշնամու դեմ հերոսաբար մարտնչում են ռուսներ, ուկրաինացիներ, բելոռուսներ, վրացիներ, հայեր, ադրբեջանցիներ, ղազախներ, կիրգիզներ, ուզբեկներ, տաջիկներ, թուրքմեններ, լիտվացիներ, լատիշներ, էստոնացիներ և մեր երկրի այլ ժողովուրդներ:

Շքանշաններով և մեդալներով պարգևատրված մարտիկների մեջ կան Սովետական Միության 113 ազգություններ:

---

Ահա Սովետական Միության հերոսների մի խումբ, բաղկացած 900 հոգուց: Նրա ազգային կազմն այսպիսին է — 607 ռուս, 181 ուկրաինացի, 22 բելոռուս, 27 հրեա, 3 թաթար, 8 ղազախ, 4 վրացի, 6 հայ, 1 ուդմուրդցի, 6 չուվաշ, 2 լատիշ, 3 օս, 2 ադրբեջանցի, 1 կոմի, 1 կարել-ֆին, 1 կիրգիզ, 3 թուրքմեն, 1 տաջիկ, 1 կարելացի, 2 էստոնացի, 1 ադիղեյցի, 1 թուրք, 2 ուզբեկ, 2 աբխազեցի, 1 բուր-

յաթ, 1 մարեյցի, 1 բաշկիր, 1 չերքես, 1 կալմիկ, 1 վեպսցի:

---

Տանկիստ Իվան Վասիլևիչ Անտոնովը առաջինը ներխուժեց Կիև—Ժիտոմիր խճուղին: Թշնամու արկը դիպավ տանկին: Անտոնովը վիրավորվեց, իսկ տանկը վնասվեց: Անվեհեր մարտիկը կրակի տակ տանկը նորոգեց և շարունակեց կռվել: Երբ գերմանական արկը վնասեց թնդանոթը, Անտոնովն սկսեց թշնամուն տրորել տանկի թրթուրով:

---

Ալիմկա Աբդուլի Աբդերշինը հրաձգային ջոկի գլուխն անցած շրջանցում էր Դնեպրը: Գերմանական ԴԶՕՏ-ը խանգարում էր մեր ստորաբաժանման առաջխաղացմանը: Աբդերշինը հակատանկային նռնակներով ոչնչացրեց ԴԶՕՏ-ի կայազորը, իսկ ջոկի հետ միասին առաջինը ներխուժեց բարձունքը և 8 օրվա ընթացքում դիմադրում էր գերմանացիների հակագրոհին: Երբ հարևան ստորաբաժանման ավտոմատավորների հրամանատարը դուրս եկավ շարքից, Աբդերշինը ստանձնեց հրամանատարությունը և շարունակեց դիմա-



դրել գերմանացիներին: Բարձունքը մերն էր:

Մատայ Բայխսովը ջոկի գլուխն անցած մի քանի ժամ դիմադրեց հիտլերականների գրոհներին և օգնեց իր դասակին շարժվելու առաջ: Բայխսովը իր գնդացրով ոչնչացրեց 40-ից ավելի գերմանացի: Հաշվարկի հրամանատարը և նշանառուն ընկան կռվում, նա մենակ շարունակում էր կռվել:

Անտոնովը ռուս է, Աբդերշինը թաթար, Բայխսովը ղազախ, բայց նրանք բոլորն էլ մեծ մայր հայրենիքի զավակներն են, ՍՍՌՄ-ի ժողովուրդների միաձույլ ընտանիքի անդամները: Անսահման սերը հայրենիքի հանդեպ և ատելությունը դեպի թշնամին՝ ոգևորում էին նրանց հերոսական սխրագործությունների:

Անտոնովը, Աբդերշինը և Բայխսովը ստացան Սովետական Միության Հերոսի կոչում:

(«Блокнот Агитатора Красной Армии», № 3, 1944 г.)

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓԱՌՔԻ ՕՐԱԳԻՐԸ

## 1944 ԹԻՎ, ՀՈՒՆՎԱՐ

3 հունվարի. — Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը սրընթաց գրոհով ազատագրեցին Նովգորոդ—Վոլինսկի քաղաքն ու երկաթուղային ուժեղ հանգույցը:

4 հունվարի. — Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Բելայա—Ցերկով քաղաքն ու երկաթուղային կայարանը:

5 հունվարի. — Ազատագրվեց Բերդիչեվ քաղաքն ու երկաթուղային կայարանը:

8 հունվարի. — Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը ճեղքեցին գերմանացիների ուժեղ ամրությունները և գրավեցին Կիրովոգրադը:

11 հունվարի. — Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերն անցան Սլուչ գետը և սրընթաց գրոհով ազատագրեցին Սարնի քաղաքը:



14 հունվարի. — Բելոռուսական ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Մոզիրի քաղաքն ու մարզային կենտրոնը, ինչպես նաև Կալինկովիչ քաղաքը:

19 հունվարի. — Լենինգրադի ռազմաճակատի զորքերը ճեղքեցին գերմանացիների ամրությունները և գրավեցին Կրասնոե Սելո քաղաքն ու պաշտպանության ուժեղ հանգույց Ռոպշան:

20 հունվարի. — Վոլխովի ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Նովգորոդ քաղաքը:

21 հունվարի. — Լենինգրադի և Վոլխովի ռազմաճակատի զորքերը միացան իրար:

24 հունվարի. — Լենինգրադի ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Պուշկինը (Ցարսկոյե Սելո) և Պավլովսկը (Սլուցկ):

26 հունվարի. — Լենինգրադի ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Գատչինան (Կրասնո-գվարդեյսկ):

28 հունվարի. — Վոլխովի ռազմաճակատի զորքերը 27-ին ազատագրեցին Տոսնո քաղաքը, իսկ այսօր Լյուբան... ազատագրված է Մոսկվա—Լենինգրադ Հոկտեմբերյան երկաթուղագիծը:

29 հունվարի. — Մերձբալթյան 2-րդ ռազմաճակատի զորքերը ազատագրեցին

Նովոսոկոլնիկի քաղաքն ու երկաթուղային ուժեղ հանգույցը:

## ՓԵՏՐՎԱՐ

1 փետրվարի.— Լենինգրադի ռազմաճակատի զորքերը, ջարդելով հարձակումը, անցան Լուգա գետը և շրջանց մաների հետևանքով գրավեցին Կինգիսեպպ քաղաքը և երկաթուղային կայարանը:

3 փետրվարի.— Ուկրաինական 1-ին և 2-րդ ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Զվինոգորոդկա, Շպոլա, Սմելա, Բոգուսլավ, Կանև քաղաքները և Բաբրյանսկայա, Ցվետկովո, Միրոնովկա երկաթուղային խոշոր հանգույցները:

4 փետրվարի.— Մեր զորքերը հակառակորդից ամբողջովին մաքրեցին Նովգորոդ—Լենինգրադ երկաթուղին:

5 փետրվարի.— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Լուցկ և Ռովնո քաղաքները, երկաթուղային խոշոր հանգույց Դոլբունովո քաղաքը:

6 փետրվարի.—Ուկրաինական 3-րդ ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Ապոստոլով քաղաքը և երկաթուղային խոշոր հանգույցը, Մարգանեց երկաթուղային կայարանը:



8 փետրվարի.— Ուկրաինական 4-րդ ռազմաճակատի զորքերը ամբողջովին լիկվիդացրին գերմանացիների օպերատիվորեն կարևոր պլացդարմը Դնեպրի ձախ ափին՝ 120 կիլոմետր երկարությամբ ռազմաճակատով և 30 կիլոմետր խորությամբ: Գրավեցին Կամենկա քաղաքը:

11 փետրվարի.— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Շեպետովկա քաղաքը:

12 փետրվարի.— Լենինգրադի ռազմաճակատի զորքերը գրավեցին Լուգա քաղաքը:

17 փետրվարի.— Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը ավարտեցին Կորսուն—Շևչենկովսկի շրջանում շրջապատված գերմանացիների 8-րդ բանակի 10 դիվիզիայի և մեկ բրիգադայի ոչնչացման գործողությունը: Գերմանացիները մարտադաշտում թողին 52·000 մարդ սպանված: Գերի հանձնվեցին 11·000 զինվոր ու սպա:

22 փետրվարի.— Ուկրաինական 3-րդ ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Կրիվոյ Ռոգ քաղաքը և Կրիվոյ Ռոգի հանքերի շրջանը:

24 փետրվարի.— Մերձբալթյան 2-րդ ռազմաճակատի և Լենինգրադի ռազմաճա-

կատի զորքերը գրավեցին Դնո քաղաքը: Նույն օրը Բելոռուսական 1-ին ռազմաճակատի զորքերը ազատագրեցին Ռոգաչև քաղաքը:

## ՄԱՐՏ

1 մարտի.— Մի քանի օր առաջ Լենինգրադի ռազմաճակատի զորքերը մարտով անցան Նարվա գետը Նարվա քաղաքից հարավ և ճեղքելով հակառակորդի խիստ ամրացված պաշտպանությունը, գրավեցին գետի արևմտյան ափին պլացդարմ 35 կիլոմետր ճակատի երկարությամբ և 15 կիլոմետր խորությամբ:

2 մարտի.— Օստրովի ուղղությամբ մեր զորքերը շարունակելով հարձակումը, գրավեցին Լենինգրադի մարզի Սոշիխինո շրջանային կենտրոնը, ինչպես նաև մարտերով գրավեցին 30 այլ բնակավայր:

4 մարտի.— Կրիվոյ Ռոգ քաղաքից հարավ մեր զորքերն անցնելով Ինգուլեց գետը, գրավեցին Ինգուլեց, Նիկոլով—Կոզելսկ երկաթուղային կայարանները:

5 մարտի.— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը մարտի 4-ին անցնելով հարձակման, ճեղքեցին գերմանացիների ուժեղ պաշտպանությունը մոտ 180 կիլո-



մետր ճակատի երկայնությամբ և հարձակողական մարտերի 2 օրվա ընթացքում առաջ շարժվեցին 25—50 կիլոմետր: Մեր զորքերը հարձակման ընթացքում գրավեցին Իզյասլավլ քաղաքն ու խոշոր երկաթուղային կայարանը, Շումսկ, Յամպոլ և Օստրոպոլ քաղաքները ու ավելի քան 500 այլ բնակավայր:

7 մարտի.— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը գրավեցին Տարնոպոլի մարզի շրջանային կենտրոն Պոդվոլոչիսկ քաղաքն ու երկաթուղային խոշոր կայարանը:

9 մարտի.— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը ճակատային գրոհի հետ զուգակցված հմուտ շրջանցման մանևրի հետևանքով գրավեցին Պրոսկուրովի ուղղությամբ գերմանացիների պաշտպանության կարևոր հենակետ Ստարոկոնստանտինով քաղաքը:

Ուկրաինական 3-րդ ռազմաճակատի զորքերն անցնելով հարձակման, անցան Ինգուլեց գետը, ճեղքեցին գերմանացիների ուժեղ պաշտպանությունը գետի արևմտյան ափին և հարձակողական մարտերի 4 օրվա ընթացքում առաջ շարժվեցին 30—60 կիլոմետր, ընդլայնելով ճեղքվածքը մինչև 170

կիլոմետր ճակատով։ Հարձակման ընթացքում ազատագրվեցին Նովի Բուգ և Կազանկա շրջանային կենտրոնները, ու ավելի քան 200 այլ բնակավայր։ Կտրվեց Դոլինսկայա—Նիկոլայեվ երկաթուղագիծը։

10 մարտի.— Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը, վերսկսելով հարձակումը, Ումանի ուղղությամբ ճեղքեցին գերմանացիների ուժեղ պաշտպանությունը և հարձակողական մարտերի 5 օրում առաջ անցան 40—70 կիլոմետր, ճեղքվածքը ընդլայնելով մինչև 175 կիլոմետր ռազմաճակատով։

Կատարված օպերացիայի հետևանքով ռազմաճակատի զորքերը գրավեցին Ուման քաղաքը և Խրիստինովկա քաղաքն ու երկաթուղային կարևոր հանգույցը։ Գրավվեց ավելի քան 300 այլ բնակավայր։

13 մարտի.— Ուկրաինական 3-րդ ռազմաճակատի զորքերը, անցնելով Դնեպր գետը ստորին հոսանքում, գրավեցին Բերիսլավ քաղաքը և, զարգացնելով հարձակումը, այսօր՝ մարտի 13-ին փողոցային մարտերի հետևանքով գրավեցին երկաթուղային ու ջրային կոմունիկացիաների խոշոր հանգույց և Դնեպրի գետաբերանի



մոտ գերմանացիների պաշտպանության կարևոր հենակետ Խերսոն քաղաքը։

16 մարտի.— Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը, զարգացնելով հարձակումը, երեկ՝ մարտի 15-ին տանկային միավորումների ու հետևակի սրընթաց գրոհի հետևանքով գրավեցին Վապնյարկա խոշոր երկաթուղային հանգույցն ու քաղաքը, այսպիսով կտրելով Ժմերինկա—Օդեսսա կարևորագույն երկաթուղային մագիստրալը։

17 մարտի.— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը զարգացնելով հարձակումը, այսօր՝ մարտի 17-ին, շրջանցման մանևրի հետևանքով գրավեցին Լվովի ուղղությամբ գերմանացիների պաշտպանության կարևոր հենակետ Դուբնո քաղաքը։

18 մարտի.— Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը, շարունակելով հարձակումը, երեկ՝ մարտի 17-ին գրոհով գրավեցին Նովո-Ուկրաինկա քաղաքը ու երկաթուղային խոշոր կայարանը, Պոմոշնայա քաղաքն ու երկաթուղային կարևոր հանգույցը, որ գերմանացիները վերածել էին իրենց պաշտպանության ուժեղ հենակետերի։

19 մարտի.— Ուկրաինական 1-ին ռազ-

մաճակատի զորքերը շրջանց մանևրի և ճակատից կատարած գրոհի հետևանքով, այսօր՝ մարտի 19-ին գրավեցին Կրեմենեցի լեռնաշղթայի վրա գտնվող հզոր բնական ամրոց Կրեմենեց քաղաքը, որը գերմանացիները ուժեղացրել էին արհեստական պաշտպանական կառուցումների զարգացած ցանցով:

20 մարտի — Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը տանկային միավորումների ու հետևակի սրընթաց մանևրի հետևանքով երեկ՝ մարտի 19-ին գրավեցին խոշոր երկաթուղային հանգույց և Դնեստրի վրա գերմանացիների պաշտպանության կարևոր հենակետ Մոգիլև—Պոդոլսկի քաղաքը:

Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը այսօր՝ մարտի 20-ին, գրոհի և թևերից կատարած շրջանց մանևրի հետևանքով, գրավեցին Ուկրաինայի մարզային և խոշոր արդյունաբերական կենտրոն Վիննիցա քաղաքը, որ գերմանացիները դարձրել էին Հարավային Բուգի վրա պաշտպանության հզոր հենակետ:

21 մարտի— Ժմերինկա քաղաքից հարավ, մեր զորքերը զարգացնելով հարձակումը, գրավեցին Վիննիցայի մարզի շրջանային



կենտրոններ Շարգորոդ, Կոպայգորոդ քաղաքները, ինչպես նաև մարտերով ազատագրեցին ավելի քան 80 այլ բնակավայր:

22 մարտի—Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը, շարունակելով հարձակումը, երկօրյա համառ մարտերից հետո գրավեցին կարևոր երկաթուղային հանգույց և Հարավային Բուգի միջին հոսանքում գերմանացիների պաշտպանության ուժեղ հենակետ Պերվոմայսկ քաղաքը:

23 մարտի— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը, վերսկսելով հարձակումը Տարնոպոլ—Պրոսկուրով հատվածում և ճեղքելով հակառակորդի պաշտպանությունը, հարձակողական մարտերի 3 օրվա ընթացքում առաջ շարժվեցին 40—60 կիլոմետր: Այդ ժամանակ մեր զորքերը գրավեցին Կոպիչինցի քաղաքն ու երկաթուղային խոշոր հանգույցը, Տրեմբովլյա քաղաքն ու խոշոր երկաթուղային կայարանը:

24 մարտի— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը, Տարնոպոլ—Պրոսկուրով հատվածում ետ մղելով հակառակորդի բոլոր հակագրոհները և ուժասպառ անելով այդտեղ հակագրոհներ գործող գերմանական տանկային ու հետևակային դիվիզիաները, թշնամու համար հանկարծակի ան-

ցան հարձակման և ճեղքեցին նրա ռազմա-ճակատը:

Հարձակողական մարտերի չորս օրվա ընթացքում Ուկրաինական առաջին ռազմաճակատի զորքերը առաջ շարժվեցին 60—100 կիլոմետր, գրավեցին Չորտկով քաղաքը ու օպերատիվորեն կարևոր երկաթուղային հանգույցը, Գուսյատին քաղաքը, Զալեշչիկի քաղաքն ու երկաթուղային հանգույցը Դնեստր գետի վրա ու ազատագրեցին ավելի քան 400 այլ բնակավայր:

25 մարտի— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը, համառ մարտերից հետո գրավեցին երկաթուղային խոշոր հանգույց և գերմանացիների պաշտպանության ուժեղ հենակետ Պրոսկուրով քաղաքը:

26 մարտի— Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը, շարունակելով սրընթաց հարձակումը, մի քանի օր առաջ անցան Դնեստր գետը 175 կիլոմետր երկարությամբ հատվածում, գրավեցին Բելցի քաղաքն ու երկաթուղային կարևոր հանգույցը և, զարգացնելով հարձակումը, հասան մեր պետական սահմանին— Պրուտ գետին 85 կիլոմետր ճակատի երկարությամբ:

27 մարտի— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը, զարգացնելով հարձա-



կումը, տանկային միավորումների ու հետևակի սրընթաց հարվածի հետևանքով, գրավեցին Ուկրաինայի մարզային կենտրոն Կամենեց—Պոդոլսկ քաղաքը՝ Դնեստրի վրա գերմանացիների պաշտպանության ուժեղ հենակետը:

28 մարտի— Ուկրաինական 3-րդ ռազմաճակատի զորքերը, համառ մարտերից հետո, գրոհով գրավեցին Ուկրաինայի մարզային ու արդյունաբերական խոշոր կենտրոն Նիկոլաև քաղաքը՝ երկաթուղային կարևոր հանգույցը, Սև ծովի խոշորագույն նավահանգիստներից մեկը և գերմանացիների պաշտպանության ուժեղ հենակետը Հարավային Բուգի գետաբերանի մոտ:

29 մարտի— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը տանկային միավորումների ու հետևակի հմուտ մանևրի հետևանքով գրավեցին Կոլոմիա քաղաքն ու երկաթուղային խոշոր հանգույցը՝ Կարպատյան նախալեռներում գերմանացիների պաշտպանության կարևոր հենակետը:

30 մարտի— Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը, զարգացնելով հարձակումը, անցան Պրուտ գետը և գրոհով գրավեցին Ուկրաինայի մարզային քաղաք Չերնովիցին— Հյուսիսային Բուկովինայի

